ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ «ԲԱՆԱՍԷՐ»Ի

A. Nazar

Ս. ՄԵՍՐՈԲԻ ԵՒ ԳՐԵՐՈՒ ԳԻՒՏԻ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

# ԱՂԲԻՒՐՆԵՐՆ ՈՒ ԱՆՈՆՑ ՔՆՆՈՒԹԻՒՆԸ

Կազմեց

Հ. ԱՃԱՌԵԱՆ



ԲԱՐԻԶ
Տպագրութիւն «Բանասէր»ի
9, Rue Gazan, 9
1907




# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

—

Ներկայ հատորը առաջին մասն է Ս. Մեսրոպի եւ Հայերէն Գրերու պատմութեան վրայ խօսող ընդարձակ աշխատութեանս, որ 1905 թուին արժանացաւ Բանանեան մրցանակին՝ Մոսկուայի Լազարեան Ճեմարանին կողմէն՝ քննութեամբ Մեծ. Ուսուցչապետ Գր. Գր. Խալաթեանի։

Յաջորդ երկու հատորներն ալ կը տպուին առանձին գրքերով՝ ներկայ հատորէս անկախաբար, այս վերնագրերով. «Ս. Մեսրոպի կենսագրութիւնը», «Հայոց գրերը»։

Հ. ԱՃԱՌԵԱՆ

1906 Նոյ. 25
Նոր-Բայազիտ

## Ս. ՄԵՍՐՈՊԻ ԵՒ ԳՐԵՐՈՒ ԳԻՒՏԻ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

# ԱՂԲԻՒՐՆԵՐՆ ՈՒ ԱՆՈՆՑ ՔՆՆՈՒԹԻՒՆԸ

### ԳԼՈՒԽ Ա.

*Հին աղբիւրներ.*

—

Ս. Մեսրոպի եւ Հայոց գրերու գիւտին վրայ խօսող աղբիւրները կրնանք բաժնել երկու գլխաւոր կարգի. առաջին՝ հին աղբիւրներ եւ երկրորդ՝ նոր աղբիւրներ։

Հին աղբիւրներ կը կոչենք բոլոր այն մեծ ու փոքր գրութիւնները՝ որոնք կը գտնուին մեր հին մատենագրութեան մէջ ասդ անդ ցրուած. ասոնցմէ միայն երկուքը կամ առ առաւելն երեքը (Կորիւն, Ղազար, — Խորենացի) կրնան ժամանակակից կամ մօտաւոր աղբիւրներ համարուիլ. եւ այս պատճառաւ բանասիրական տեսակէտով ամէնէն աւելի արժանահաւատ եւ վստահելի աղբիւրներ են. իսկ մնացեալ գրութիւնները այնքան աւելի հեռու են վաւերականէ համարուելէ՝ որքան կը մօտենան նորագոյն ժամանակներուն։ Եթէ խիստ քննադատական աչքով նայինք այս համեմատաբար յետին գրութիւններուն վրայ, ստիպուած պիտի լինինք կասկածիլ անոնց արժանահաւատութեան մասին։ Արդարեւ այդ աղբիւրներուն պարունակած տեղեկութիւնները, եթէ արդէն կը գտնուին նախորդ երեք աղբիւրներուն մէջ, անշուշտ ասոնցմէ քաղուած ըլլալով, նոր բան մը չեն տար մեզի եւ հետեւաբար աւելորդ կրկնութիւն են, իսկ այն տեղեկութիւնները որ նոյն հնագոյն աղբիւրներուն մէջ չեն գտնուիր, պիտի ըլլան կա՛մ թիւրիմացութիւն՝ ելած հնագոյն աղբիւրի մը այս կամ այն հատուածէն, կա՛մ անձնական ենթադրութիւն, որ նոյն հեղինակին բանասիրական գործունէութեան արդիւնքն է անշուշտ, կա՛մ աւանդութիւն, որ եղծեալ եւ խանգարուած ձեւով հասած է իրենց եւ կամ վերջապէս կեղծիք՝ դիտաւորեալ կամ ա-

ռանց մանաւոր դիտաւորութեան։ Այս չորս պարագային ալ նոյն աղբիւրներուն տուած նոր տեղեկութիւնները պէտք համարուին սխալ եւ անվստահելի։

Բայց պէտք է իսկոյն աւելցնենք նաեւ. այն որ մեզ հասած հին կամ աւելի ճիշտ հնագոյն աղբիւրները ամբողջ չեն. կրնանք ունեցած ըլլալ մի քանի ուրիշ ժամանակակից աղբիւրներ, որոնք յետոյ անհետ կորսուած են. զարմանալի է որ Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի կրթած 60 աշակերտներէն միայն երկուքը կան, որոնցմէ որեւիցէ գրական աշխատանք հասած է մեզի. ճշմարիտ է թէ հին ոսկեդարեան թարգմանութիւններն ալ մնացեալ աշակերտներուն վրայ բաժնելու ենք, բայց այնու ամենայնիւ բաւական աշակերտներ պարապ կը մնան. պէտք է ընդունիլ թէ Ե. դարու այն համատարած մեծ գրական շարժման ժամանակ եղած են նաեւ ուրիշ մատենագիրներ, որոնց աշխատութիւնները ժամանակը չէ հասուցած մեզի։ Ասոնց մէջ յատկապէս կրնանք յիշել երէց թարգմանիչ Աբրահամ Խոստովանողի «Մնացորդաց Գիրք Արեւելից Հայոց» պատմական աշխատութիւնը, որմէ քաղուածներ կ՚ընէ Մեսրոպ Երէց Ժ. դարուն։

Արդ յետին աղբիւրները՝ որոնք մեզմէ աւելի բարեբախտ վիճակի մէջ էին նոյն կորսուած մատենագրութեանց նկատմամբ, կրնային ասոնցմէ շատ բան փոխ առնել. եթէ իրենք յատուկ յատուկ չեն յիշեր փոխառութեանց տեղերը, ապացոյց չէ թէ ձեռքի տակ չեն ունեցած. այս նկատումով կրնանք եւ պէ՛տք է մտածենք որ յետին աղբիւրներուն մէջ գտնուած նոր տեղեկութիւններէն գոնէ ոմանք քաղուած ըլլան հին վաւերական աղբիւրներէ, ուստի եւ իբր այն թանկագին եւ վստահելի մնացորդներ։ Հետեւաբար պէտք չէ որ ամէն այնպիսի նոր տեղեկութեան հետ վարուինք կատարեալ արհամարհանքով, այլ գոնէ վերապահութեամբ, սպասելով որ ամենակարող ժամանակը օր մը ասոնց մասին ալ գոհացում տայ։

Ահաւասիկ մեր հին աղբիւրներու շարքը՝ իւրաքանչիւրին քննութեամբ հանդերձ։

## 1. ԿՈՐԻՒՆ

### (տպ. Վենետիկ, 1833)

Կորիւն, որ յետին հեղինակներէն «սքանչելի» տիտղոսն է առած, երէց թարգմանիչներուն կարգէն է։ Այն ժամանակ երբ Եզնիկ Կողբացի եւ Յովսէփ Պաղնացի Բիւզանդիոն գացին՝ Կորիւն եւս իւր Ղեւոնդ ընկերակցին հետ ուղարկուեցաւ այնտեղ՝ իւր ուսումը շարունակելու համար։ Աւանդութիւնը կ՚ըսէ թէ ուսումն աւարտելէ յետոյ իւր Ընձակ ընկերոջ հետ ուղարկուեցաւ Երուսաղէմ. հոն ալ ժամանակ մը մնալէ

յետոյ՝ վերադարձաւ Հայաստան։ իր հետ բերելով Ս. Կիւրեղ Երուսաղեմացւոյ ապաշխարող արձակելու կարգը։ Կորիւն ձեռնադրուեցաւ Վրաստանի եպիսկոպոս, եւ Թերեւս այս պաշտօնի մէջ ալ կնքեց իւր մահկանացուն։ Կորիւնի մասին կենսագրական ուրիշ տեղեկութիւններ չկան։

Կորիւն գրած է համառօտ երկասիրութիւն մը, որուն վերնագիրն է «Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյ առն երանելւոյ Մեսրովպայ վարդապետի մերոյ Թարգմանչի». բայց այս վերնագիրը յետին ժամանակի բան է, որովհետեւ, ինչպէս Ս. Մեսրոբի կենսագրութեան մէջ, Գլուխ ԺԴ., աւելի մանրամասն պիտի ցուցնենք, Կորիւն իւր ամբողջ աշխատութեան մէջ միշտ Մաշթոց ձեւն է գործածած եւ ոչ բնաւ Մեսրոպ, որ Խորենացւոյն եւ ուրիշ յետին մատենագիրներու սիրած ձեւն է։ Միայն յիշեալ խորագրին մէջ է որ Մեսրոպ ձեւը երեւան կուգայ։

Կորիւն իւր աշխատութիւնը պատրաստած է առաջարկութեամբ կամ իր բառով «հրամանաւ» «առն միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ աշակերտի առն այնորիկ». այս Յովսէփը առհասարակ կը համարուի Յովսէփ եպիսկոպոսը, որ յետոյ կաթողիկոսական պաշտօնի բարձրացաւ։ Զինքը յորդորած են նաեւ իւր աշակերտակից ընկերները, որոնք Յունաստանէ վերադարձին վախճանած գտնելով իրենց սուրբ վարդապետը, իբրեւ հոգեկան մխիթարութիւն՝ փափաքեցան ունենալ անոր կենսագրութիւնը (Մալխասեանց. Պատ. Մաշ. էջ 85)։

Կորիւն լինելով ժամանակակից, աշակերտ եւ գործակից եւս Ս. Մեսրոբի իւր աշխատութիւնը մեր ունեցած բոլոր աղբիւրներու մէջ ամէնէն բարձրն ու հաւատարիմն է։ Փարպեցին եւ Խորենացին, որոնք Կորիւնէն յետոյ կարեւորագոյն աղբիւրներն են, օգտուած են այս աշխատութենէն. «ուրեմն եւ այս գրքէն պէտք է գաղափար կազմենք գրերի գիւտի եւ առհասարակ Թարգմանական գործունէութեան առաջին շրջանի մասին, այնպէս որ եթէ այս գրուածքը չլինէր՝ մեր գրականութեան պատմութեան սկզբնաւորութեան եւ փառաւոր շրջանի մասին մեր տեղեկութիւնները Թերի կլինէին (Մալխաս. էջ 85)»։

Կորիւնի աշխատութիւնը հասած է մեզի երկու տարբեր խմբագրութեամբ, որոնք ծանօթ են բանասիրութեան մէջ «ընդարձակ» եւ «համառօտ կամ փոքր» անուններով։ Զանազանութիւնը որ կայ այս երկու գրուածներուն մէջ, այնքան մեծ է եւ խոր, միեւնոյն խնդրի առթիւ երկուքը իրարու ա՛յնպէս հակասական տեղեկութիւններ կուտան, որ եթէ ատոնցմէ մէկը Կորիւնինն է, միւսն անպատճառ յետին դարերու ձեւափոխութիւն է։ Քիչ մը վերջը պիտի քննենք այն խնդիրը թէ այս երկուքէն ո՛րը բուն Կորիւնի գործն է եւ ո՛րը յետին ձեւափոխութիւն։

Կորիւնի ընդարձակ խմբագրութիւնը տպուած է նախ 1833 Թուին։

«Վենետիկ, Մամբրէ Վերծանողի երկու ճառերուն եւ Դաւիթ Անյաղթի այլեւայլ գրուածքներուն հետ՝ «Կորիւն, Մամբրէ, Դաւիթ» խորագրով. որուն համեմատ են նաեւ մեր կոչումները։ 1854-ին Սոփերքի ԺԱ. հատորին մէջ հրատարակուած է համառօտ խմբագրութիւնը։ 1895-ին, դարձեալ Վենետիկ, հրատարակուեցաւ Կորիւն, իւրաքանչիւր էջին վրայ նախ ընդարձակ եւ յետոյ համառօտ խմբագրութիւնը դրուած։ Յիշենք նաեւ ընդարձակ Կորիւնի բոլորովին նոր համառօտութիւնը, որ պատրաստեցին եւ հրատարակեցին Գարագաշեան եւ Ց. Դուրդէն՝ իրենց «Ճաշակ ոսկեղէն դպրութեան» գրաբար ամսաթերթին մէջ։

Օտար թարգմանութիւններն են, նախ Գերմաներէն, որ հրատարակեց B. Welte հայագէտը, Թիւպինկէն, 1841, Վիւրթէմպէրկի Վիլհէլմ Ա. թագաւորին գահակալութեան 25ամեակին առթիւ, այս վերնագրով. Goriun's Lebensbeschreibung des heiligen Mesrop։ Երկրորդ անգամ թարգմանուեցաւ Ֆրանսերէն Էմինի ձեռքով, եւ հրատարակուեցաւ Լանկլուայի հայ պատմագրաց հաւաքածոյին երկրորդ հատորին մէջ, այսպիսի վերնագրով. Goriun ; Biographie du bienheureux et saint docteur Mesrob, traduite pour la première fois en français, par Jean-Raphael Emine.

Կորիւնի անձին եւ իր աշխատութեանց մասին եղած քննական գրուածքները հետեւեալներն են.

1. Հ. Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն. բ. տպ. Վենետիկ, 1886. էջ 291—295։

2. Գաթրճեան, Հատակոտորք, Հանդէս Ամսօրեայ, 1887, էջ 10 եւն.։

3. Fr. Müller, Гazar Pharbetshi und Koriun, VZKM. V. 36—38, Թարգմ. Հանդ. Ամս. 1891, էջ 178—179։

4. Ֆէթթէր, Հայկական աշխատասիրութիւնք, Վիեննա, 1895, էջ 78—82։

5. Գ. Տէր Մկրտչեան, Ագաթանգեղոսի աղբիւրներից, Վղրշպտ. 1896, յատկապէս էջ 15—25։

6. Հ. Յովհ. Թորոսեան, Համառօտ տեսութիւն Կորեան եւ իւր գրութեան վերայ. Բազմ. 1897, էջ 110—115, 303—310։ (Կորիւնի վերայ գրուած շատ ամփոփ եւ ամբողջական ուսումնասիրութիւն մըն է, ուր շօշափուած եւ պարզուած են Կորիւնի վրայ յարուցուած ամէն խնդիր. դժբախտաբար աշխատութիւնը մնացած է կիսատ եւ դեռ շարունակելի)։

7. Ստ. Մալխասեանց, Դասընթաց Հայոց մատենագրութեան պատմութեան, Թիֆլիս, 1899, էջ 85—90։

8. Հ. Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, Վենետիկ, 1890, էջ 107—119։

9. Նորայր Բիւզանդացի, Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփխիս, 1900. որուն վրայ

10. Դր. Մալխաս[եան] ունի երկար մատենախօսական մը, Հանդ. 1902, էջ 136, 212 եւ 242։

Ասոնցմէ դուրս կան նաեւ ցանուցիր տեղեկութիւններ այս ու այն քննութեան մէջ, զորոնք հարկաւոր եղած ժամանակ կը յիշենք։

Յիշեալ քննական աշխատութեանց մէջ Կորիւնի մասին յարուցուած խնդիրները հետեւեալներն են.

1. Ի՞նչ ազգէ էր Կորիւն.

2. Ո՞րն է Կորիւնի բուն խմբագրութիւնը, ընդարձա՞կը թէ համառօտը.

3. Ե՞րբ գրեց Կորիւն.

4. Ի՞նչ յարաբերութիւն ունի Կորիւն Ագաթանգեղոսի եւ Բուզանդի հետ

Կ'անցնինք այժմ խօսիլ ատոնց իւրաքանչիւրին վրայ կարգով.

1. Ի՞նչ ազգէ էր Կորիւն. — Մինչեւ վերջերս առհասարակ ընդունուած էր բանասէրներու կողմէն թէ Կորիւն հայ է, Վրաց եպիսկոպոս. այս մասին ոչ մէկը կասկած էր յայտնած։ Առաջին անգամ Գ. Տէր Մըկրտչեան, Ագաթանգեղոսի աղբիւրներից, էջ 22. այն կարծիքը կը յայտնէ թէ Կորիւն վրացի կամ գոնէ վրահայ ըլլայ։ Այս ենթադրութեան իբրեւ փաստ կը դնէ Կորիւնի մէկ խօսքը՝ Կորիւն խօսելով Վրաց քարոզութեան վրայ, կ'ըսէ. «Եւ արդ գնոսա, որ յայնչափ ի մանուոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամօքն մի ազգ կապեալ՝ փառաբանիչք միոյ Աստուծոյ յօրինէր. յորոց եւ իմ անարժանիս՝ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ. որոց առաջինն Սամուէլ անուն եւն (էջ 15—16)»։ Ստորագծեալ մասը Միաբան կը հասկնայ «յորոց (ի Վրաց) եւ ես անարժանիս՝ Կորիւն»։ Ասոր համակարծիք է նաեւ Հ. Յովհ. Թօրոսեան, Բազմ. 1897, էջ 111—112, ընդունելով թէ «անշուշտ յորոց կ'ակնարկէ ազգը, որ յիշուած է նախորդ տողին մէջ, ինչպէս նաեւ յաջորդ տողին՝ «որոց առաջինն Սամուէլ անուն» խօսքին մէջ որոցով Վրացի ազգը կամ ժողովուրդը կ'ակնարկէ։» Միաբան եւ Թօրոսեան վերի ենթադրութիւնը հանելու համար «յորոց» բացառական հոլով են ընդունած. եթէ մի՛միայն ա՛յս կարելի ըլլար, անշուշտ իրաւունք կ'ունենային. բայց դժբախտաբար հայերէնի օրէնքները թոյլ կուտան հատուածը նաեւ ուրիշ տեսակ հասկընալու. «յորոց» կարելի է առնել նաեւ իբրեւ սեռական, յ նախդիրն աւելադրութեամբ գրուած ի կարգ բառին նախդիրին պատճառաւ. այնպէս որ յորոց կը պատկանի եպիսկոպոսութեան ձեւին՝ իբրեւ յատկացուցիչ. որով հատուածը կը հասկցուի «եւ իմ անարժանիս եղեալ ի կարգ ի վիճակ եպիսկոպոսութեան որոց (նոցա)», այսինքն «որոնց

եպիսկոպոսութեան կարգին հասայ եւ անարժանս այլ»։ Այս տեսակ շըր-ջումներ ամենասովորական բաներ են հայերէնի համար։

Հ. Թորոսեան նոյն տեղը կ'աւելցնէ նաեւ երկու նոր փաստեր, Կորիւնի վրացի ըլլալն ապացուցանելու համար. առաջինն այն որ Կորիւն գովեստով կը խօսի Ջաղայ Թարգմանիչն, Սամուէլ եպիսկոպոսին, Արձիւղ Թագաւորին եւ Աշուշայ իշխանին վրայ, որոնք բոլոր վրացի էին։ Այս բանը հազիւ թէ իբր փաստ կարելի ըլլայ նկատել, որովհետեւ Կորիւն նոյնչափ, եւ տասնապատիկ աւելի գովեստ կուտայ Հայոց համար. յատկապէս էջ 11, ուր Ս. Մեսրոբը Մովսէսին կը հաւասարէ, ներողութիւն խնդրելով իւր այս յանդգնութեան համար։ Բացի այս՝ Վրաց համար ըսուած գէշ խօսքեր երբեք չեն պակսիր Կորիւնի մէջ. ինչպէս էջ 15 «ի կողմանց կողմանց եւ ի խառնիճաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ ... զաղտ եւ զժանդ չարաւանոտ գիւացն եւ զանօրինագործ պաշտամանն ի բաց այնչափ անջատեալ ի հայրենեաց իւրեանց...»։ Վրաստանն այնչափ կ'արհամարհէ Կորիւն, որ մինչեւ իսկ տեղ մը չուզեր անունը տալ, այլ բարբարոսներու երկիր ըսելով կը բաւականանայ, այնչափ ատելական է իրեն համար այս վերադիրը Վրացիներուն. «Հոգ ի մտի արկանէր սիրելին Քրիստոսի եւ վասն բարբարոսական կողմանն. եւ առնոյր կարգեալ նշանագիրս վրացերէն լեզուին (էջ 15)»։

Երկրորդ փաստն ալ այն է որ Ս. կրօնական պատերազմին ժամանակ, երբ «ամէն կողմէ հայազգի իշխանք, եպիսկոպոսք եւ ո՛ եւ է աստիճանաւոր անձինք մէջ տեղ կ'ելնէին, ձայն կը բարձրացնէին, կը բողոքէին, գրիչ եւ սուր կը շարժէին, կը գումարէին՝ խորհուրդ կ'ընէին... չի կայ՝ չերեւիր Կորիւն, նշանաւորն յաշակերտս ս. Մեսրովբայ, անբաժան ընկերն Ղեւոնդայ՝ Եզնկայ եւ Յովսէփու»։ Իսկապէս երեք փաստերէն ամէնէն զօրեղը այս է. սակայն այս պարագայէն կրնայ հետեւցուիլ թէ 451-էն արդէն Կորիւն վախճանած էր. Թորոսեան առանց ապացոյցի չուզեր ընդունիլ այս. բայց եթէ ընդունինք Կորիւնի ծննդեան թուականը 380—390, ինչպէս Թորոսեան կ'առաջարկէ (անդ էջ 111), 451-ին Կորիւն պիտի ըլլայ 70—60 տարեկան ծերունի, հաւանաբար վախճանեալ։

Ըստ այսմ չենք կրնար ապացուցուած համարել Մխաքանի կարծիքը, որով Կորիւն վրացի կամ վրահայ է, եւ ըստ Թորոսեանի ամէն այն պատանիներէն, զորս «հրաման տայր... արքայն Վրաց ի կողմանց կողմանց ժողովել տալ ի ձեռն վարդապետին (ս. Մեսրովբայ)։» Նորայր Կորիւն Թարգմանիչ, էջ 385 վերի հատուածը ուղղելով «յորոց եւ զտան արժանիք եղանել ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ», նոյն իսկ չընդունիր թէ Կորիւն Վրաց եպիսկոպոս ձեռնադրուած ըլլայ։

Չ. Ո՞րն է Կորիւնի բուն խմբագրութիւնը. ընդարձա՞կը թէ համառօտը. — Այս մասին բանասէրներու կարծիքները զանազան են. ոմանք

համառօտին կողմն են, բայց աւելի մեծ մասը ընդարձակին կողմն են. մինչեւ 1854, համառօտ Կորիւնի հրատարակութեան թուականը, միայն ընդարձակը ծանօթ լինելով, այս միայն բնիկ եւ հարազատ աշխատութիւն էր ճանչցուած, այնպէս որ բնական է թէ գերմաներէն թարգմանութիւնն ալ անոր վրայէն պիտի ըլլար. բայց համառօտին հրատարակութենէն յետոյ վիճակը շուտով փոխուեցաւ. Ալիշան, Վենետիկի ուրիշ հայրեր, ինչպէս եւ Էմին եւ Լանկլուա այս վերջինը միայն հարազատ համարեցին, այնպէս որ ֆրանսերէն թարգմանութիւնն ալ անոր վրայէն եղած է։ Սակայն Ցէտտէր, Միւլլէր, Հ. Բ. Սարգիսեան, Ց. Թորոսեան եւ անշուշտ ամբողջ Վեննական դպրոցը ընդարձակին կողմնակից են։

Այսպիսի վէճ մը սակայն ներելի էր դեռ առաջ, բայց այժմ երբ յայտնի է ոսկեդարեան եւ ոչ-ոսկեդարեան լեզուներու տարբերութիւնը, խնդիրը բոլորովին պարզ է ըստ մեզ անոնց համար, որ գիտեն ճանչնալ այդ տարբերութիւնները։ Համառօտ Կորիւնը պարունակելով ոչ-ոսկեդարեան լեզուի տարրեր, չկրնար ամենեւին ըլլալ Կորիւնի հարազատ աշխատութիւնը, քանի որ Կորիւն մաքուր ոսկեդարեան գրիչ է։ Ճշմարիտ է թէ ոչ-ոսկեդարեան տարրերը այնքան առատ չեն այս աշխատութեան մէջ, ինչպէս այլուր, սակայն անոր պատճառը այն է որ համառօտը շատ տեղեր ընդարձակէն կազմուած ըլլալով, բնականապէս գիտակցաբար կամ անգիտակցաբար ոսկեդարեան լեզուն պահած պիտի ըլլար. բայց երբ որ հեղինակը ընդարձակէն կը հեռանայ եւ իրմէ բան մը կ՚աւելցնէ, ոչ-ոսկեդարեան տարրերը երեւան կուգան։ Այսպէս ոչ-ոսկեդարեան են, էջ 11՝ կերպաձեւեալ, փոխադրելով, էջ 12՝ հանդերձ աշխարհիս, էջ 13՝ բարեփառութեամբ, էջ 15, 26, 33՝ ամենասուրբ, էջ 21՝ անդր փոխադրեաց, էջ 22՝ անհեղգաբար, էջ 25՝ զշնորհացն ներգործութիւնն, բացայայտեցին գրովք, էջ 27՝ համաձայնս պարգամնացն (իմա՛ ըստ), էջ 30՝ համանգամայնցն։ Այստեսակ բառեր սովորական են Տար. Վրք. հց. Խոր. Պրպմ. Մեսր. եր. Խոսր. Սահմ. Փարպ. եւ այլ այսպիսի ոչ-ոսկեդարեան գրուածքներու մէջ. մանաւանդ վերջին «համանգամայնցն» ձեւը, որ սովորական յետնութեան նշան է։

Ի նպաստ ընդարձակին Սարգիսեան. Թորոսեան եւն մէջ բերած են նաեւ ուրիշ փաստեր, որոնցմէ լաւագոյնները կը յիշենք։

ա. Փարպեցի իր պատմութեան մէջ քանիցս կը յիշէ թէ ինքը շատ օգտուած է Կորիւնէն. արդ երբ համեմատենք Փարպեցին Կորիւնի կրկին խմբագրութիւններուն հետ, կը տեսնենք թէ ընդարձակն է որ Փարպեցիին հետ կը զուգընթանայ. այսպէս մինչ Փարպեցին եւ ընդարձակը Մաշթոց անունով կը ճանչնան մեր մատենագրութեան հայրը, համառօտը Խորենացիին հետ Մեսրովբ գիտէ։ — Ընդարձակը, Փարպեցին եւ Խորենացին կը խօսին գրերու գիւտին հետ կապ ունեցող բազմաթիւ

անձերու վրայ, որոնց մասին լուռ է համառօտը. ինչ. Հաբէլ, Վահրիճ, Վաղինակ եւ Վասակ Սիւնի, Անանիա եպիսկոպոս, Բակուր, Ջաղա, Մովսէս եպս., Արովաղէն, Երեմիա եպս. Աղուանից, Ցաճաթան եւ Բենիամին քահանաներ, Դանան, Ենովք, Մուշէ, Տիրայր եւն։

բ. Համառօտին մէջ կան այնպիսի ստումներ, որ պատմութեան ընթացքը կը խանգարեն եւ միայն Ընդարձակով կրնան լրանալ. այսպէս Ս. Մեսրոպ գրերը գտնելու համար Դանիէլին քով կ'երթայ եւ ապէ դժգոհ մնալով՝ Աստուծոյ կ'ապաւինի. մէյ մ'ալ աչքերը կը բանայ եւ «Սամոսի» մէջ կը հնարէ գրերը Հռոփանոսի հետ (տես էջ 9-11)։ «Ուստի՞ ո՞ւր. աղօթի՞ց միջոց պատահեցաւ այդ անցքն, կամ թէ արդեօք Ամբակումայ հրա՞շքն տեղի ունեցաւ։ Ո՞ւր մնացին այն երկու տարիները, յորս Դանիէլեան նշանագրաց անյաջող փորձն եղաւ» կը հարցնէ Թորոսեան, Բազմ. 1897, էջ 308։ — Ընդարձակը էջ 18-20, մանրամասն կը պատմէ թէ ի՛նչպէս Ս. Մեսրոպ Բիւզանդիոնէ դարձին ձեռք զարկաւ Յունաց Հայաստանի մէջ դպրոցներ բանալու, հալածեց «Բորբորիանոս» աղանդաւորները, անցաւ Մեծ Հայք եւ քիչ ժամանակ մնալէ ետք գնաց Աղուանից, Բաղասականի աշխարհի, Գարդմանի, Տաշրաց եւ Վրաց աշխարհները լուսաւորելու. որմէ յետոյ դարձեալ վերադարձաւ Մեծ Հայք։ Համառօտը (էջ 15) նոյնպէս կը պատմէ Բիւզանդիոնէ դարձը, «Բորբորիանոսաց» հալածումը, բայց խօսս յոելէ ետք Աղուանից, Վրաց եւն ճանապարհորդութեան մասին, յանկարծ կ'աւելցնէ. «ինքն դառնայր (ուստի՞) ի կողմանս Հայոց եւն»։ Պարզ է որ համառօտը խմբագրողը աչքի առջեւ ունեցած է Ընդարձակը, եւ ասոր վրայէն ստոստելով ծաղկաքաղ մըն է կազմած, առանց ուշադրութեան առնելու թէ իրարու հետ չկապուեցան։ Յաջորդ համեմատութիւնը բոլորովին կը պարզէ այս կէտս.

| Փոքր Կոր. (էջ 15) | Ընդարձակ Կոր. |
|---|---|
| Իսկ երանելին զիւր վարդապետութեանն պայման արարեալ, ընկեալ եւ վճարեալ, եւ բազում շնորհագիր մատեանս զհարց եկեղեցւոյ ստացեալ ծովացուցանէր զվարդապետութեանն խորութիւն. եւ լցեալ զեղոյր զամենեքումբք \| ի բնակիչս աշխարհին հոգեւոր վայելչութեամբ ի փառս ամենասուրբ Երրորդութեանն։ \| | Իսկ երանելոյն զիւր վարդապետութեանն պայման արարեալ՝ սակեալ եւ վճարեալ, եւ բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ, ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն, եւ լցեալ զեղոյր ամենայն բարութեամբք։ (էջ 18, տող 10—14) \| |
| Եւ յանձն արարեալ զամենեսեան ամենապատ շնորհացն Աստուծոյ՝ \| ինքն դառնայր ի կողմանս Հայոց։ | եւ յանձն առնելով զնոսա եւ զանձն՝ ամենապատ շնորհացն Աստուծոյ (19, 37)... \| ինքն դառնայր ի կողմանս Հայոց Մեծաց (20—22)։ |

գ. Ընդարձակը (էջ 21) Ս. Գրքի թարգմանութեան համար կը գրէ. «Իսկ երանելոյն Սահակայ զեկեղեցական գրոց զումարութիւնն՝ կանխա(ւ) յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ... զփութանակի ըզթարգմանութիւնս հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք։ Եւ շատ եւս մեկնութիւն գրոց թարգմանէին. եւ (1) այնպէս զամենայն ժամանակս իւրեանց՝ յընթերցուածս գրոց ծախէին հարքն...»։ Իսկ համառօտը բան մը աւելի ըսել ուզելով՝ կը դարձնէ «Իսկ երանելեացն սրբոյն Սահակայ եւ Մեսրոպայ զեկեղեցական գրոց զգումարութիւնն կանխաւ ի յունարէն բարբառոյ ի հայերէն թարգմանեալ... զփութանակի թարգմանեալսն՝ հաստատէր ճշմարիտ օրինակօքն բերելովք. եւ շատ եւս այլ մեկնութիւնս գրոց սրբոց թարգմանէր ըստ հայերէն Աշխարհագրացն» Սահակայն ուշադրութիւն չէ ըրած որ «երանելեացն» ու «եւ Մեսրոպայ» յաւելումներով ենթական յոքնակիի վերածելէ ետքը, մոռցած է «հաստատէր եւ թարգմանէր» եզակիներն ալ յոքնակիի վերածելու, որով անհամաձայնութիւն է գոյացուցած նախկին ուղիղ բնագրին մէջ։

դ. Ընդարձակը գրոց գիւտին այլեւայլ պարագաներուն, ժամանակից եւ գործակից անձերուն, թուականներուն եւ ուրիշ դէպքերու այնպէս ծանօթ եւ բանագէտ է, որ անկարելի է ժամանակակից գործ չհամարել. ընդհակառակը համառօտը ժամանակագրութեան կողմէ շատ լակոնական է. ընդարձակ Կորիւնի վերջը գրուած «Եւ արդ լինի համար հաւատոյ երանելւոյն...» հատուածը, որ այնպէս մանրամասն եւ հաւատարիմ է, գոյութիւն չունի համառօտին մէջ։ Ընդարձակը ժամանակակից է, որովհետեւ աչքով տեսած եւ սրտով զգացած ըլլալով այն մեծ շարժումն ու ոգեւորութիւնը՝ որ բոլոր Հայաստանը համակեց, խանդավառ լեզուով կը գրէ. «Եւ ոչ այնպէս մեծն Մովսէս զուարճանայր յէջս սինէական լերինն. չասեմք թէ առաւելօքն՝ պակասագոյն...։ Անդ էր այնուհետեւ սրտալիր ուրախութիւն եւ ակնավայել տեսիլ հայելւոյն... Անդ էր յիշելի մարգարէականն, եթէ եղիցի անդ աղբիւր բղխեալ ի տան Դաւթի եւն եւն», էջերով ճառական գրուածք, մինչդեռ համառօտը հեռու եւ անտարբեր անձ մըն է.

ե. Կորիւնի ընդարձակ խմբագրութեան ի նպաստ է նաեւ ըստ Ց. Թորոսեանի՝ Վասակի գովեստը (էջ 15), որ չկայ համառօտին մէջ. Կոր-

(1) Վենետկի տպագրութիւնն ունի. «Հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք, եւ շատ եւս մեկնութիւն գրոց թարգմանէին։ Իւ այնպէս զամենայն ժամանակս իւրեանց՝ յընթերցուածս գրոց ծախէին հարքն...» Ըստ իս պէտք է ուղղել վերի ձեւով. ասով Ս. Գրքի երկրորդ ճշտումը կը տայ Ս. Սահակին, իսկ միւս գրքերուն թարգմանութիւնը (Ռուկ. Սեբեր. Վեց. եւն) կ՚անցնի բոլոր թարգմանիչներուն. Հաստատէր (եզ.) և թարգմանէին (յգ.) չեն կրնար իրարու հետ համաձայնիլ։

ին Վարդանանց պատերազմէն առաջ գրուած ըլլալով՝ կրնար այդ դովեստը գտնել. բայց համառօտը շատ յետին գործ ըլլալով՝ խոհեմութիւն է համարած ջնջել այդ մասը «հասարակաց զգացումը չի վիրաւորելու համար»։

Գ. Դարձեալ ի նպաստ ընդարձակին կը համարուի Ագաթանգեղոսի եւ Կորիւնի յարաբերութեանց խնդիրը. քանի մը բաւական մեծ հատուածներ կան որ կը գտնուին թէ՛ Ագաթանգեղոսի եւ թէ ընդարձակ Կորիւնի մէջ, բայց համառօտին հետ շատ համաձայն չեն։ Հ. Տաշեանի եւ ուրիշներու քննութեամբ ապացուցուած է արդէն թէ այս երկուքէն Ագաթանգեղոսն է որ Կորիւնի գրքէն բանաքաղութիւններ կ'ընէ. Թորոսեան ասկէ կը հետեւցնէ թէ ընդարձակ խմբագրութիւնը կար Ագաթանգեղոսէն առաջ. այս ճիշտ է, բայց չի հետեւիր թէ համառօտը չկար. կրնային երկուքն ալ Ագաթանգեղոսի ձեռքը գտնուած ըլլալ եւ բանաքաղը միայն ընդարձակէն քաղած ըլլայ։

Ե. Զօրեղ ապացոյց է նաեւ այն պարագան, որ ընդարձակին մէջ Կորիւն իրեն համար քանի մը տեղ առաջին դէմքով տեղեկութիւն կու տայ, կը ցուցնէ որ ինքն ալ Ս. Մեսրոպի աշակերտներէն է, եւ ուր որ գործակցութիւն մը ունեցած է, ինքզինքը մէջ կը խառնէ յայտնի կերպով. մինչդեռ համառօտը այս տեսակ բան մը չունի. միայն համառօտը կարդալով կարելի չէ հետեւցնել թէ հեղինակը Ս. Մեսրոպի աշակերտ եւ գործակից ըլլայ. ուրիշ խօսքով ընդարձակին մէջ Կորիւնն է որ կը խօսի, առաջին դէմքով, մինչդեռ համառօտին մէջ ուրիշ հեղինակ մը՝ երրորդ դէմքով։ Այսպէս էջ 1՝ «աշակերտակցաց մերոյն վարդապետութեանն։ Ուստի եւ իմ մասնաւոր աշակերտութեամբ վիճակ առեալ. թէպէտ եւ էի կրտսերագոյն... էջ 16՝ յորոց եւ իմ անարժանիս՝ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ... էջ 21՝ ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ումանց եղբարց ի հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որ եւ Ղեւոնդէս առաջնոյն անուն էր, եւ երկրորդին Կորիւն. էջ 28՝ ոչ սուտապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանից զհօրէն իմոյ կարգեցաք...։» Համառօտը ասոնցմէ առաջին երկուքը իսպառ յապաւեր է. երրորդին մէջ ամենայն խղճմտութեամբ ջնջած է վերջի բառին ու ձայնը. «որոց անուանքն էին միումն Ղեւոնդ եւ միւսումն Կորիւն (էջ 17)». կարծես թէ յայտնի կերպով կ'ուզէ ցուցնել թէ այն Կորիւնը եւ այս համառօտին հեղինակը նոյն չեն. իսկ չորրորդին մէջ «ի հօրէն իմոյ» դարձուցած է չէզոքաբար «զհայրենիսն». «ոչ առ սուտապատում յարմարեալ զբանս ի մեր գովութիւն զհայրենիսն յարգելով (էջ 36)»։

Այս բոլոր պարագաները կ'ապացուցանեն թէ բնագիրն ընդարձակն է. յետին օրինագիր մը չհաւնելով ասոր խրթին ձեւերուն եւ միանգամայն տեղ տեղ հակառակ գտնելով Խորենացւոյն պատմութեան,

կազմած է համառօտը՝ շարադրելով խրթին մասերը, ջնջելով աւելորդ կարծած երկարաբանութիւնները (ինչպէս յառաջաբանն ու վերջաբանը եւ Վրաց ու Աղուանից լուսաւորութիւնը, որ այնքան հետաքրքիր չէր Հայոց), եւ վերջապէս ըստ Խորենացւոյն սրբագրելով Կորիւնի տարբերութիւնները։ Այսպէսով պահած է ընդարձակին կէսէն քիչ մը աւելին։ Համառօտ Կորիւնին կազմութեան թուականը Թորոսեան (անդ, էջ 307ը) կը դնէ Զ կամ Է դար. բայց այս բանը ճշտելը կախուած է միմիայն Խորենացւոյն թուականէն։

Աւելորդ կը համարիմ խօսիլ նաեւ այն հանգամանքին դէմ, որ Ալիշան, Թորոսեան (էջ 304ը), մինչեւ իսկ Ն. Ծարուքեան (Հայոց գիրը, էջ 165) համառօտին լեզուն աւելի բարձր կը դնեն քան ընդարձակինը. 1894-ի հրատարակիչներն ընդարձակը կը կոչեն «երկարաբան հետեւակ գրուած», իրենց կը թողունք զուարճանալ «ձեւաւոր» համառօտով։

3. Ե՞րբ գրեց Կորիւն. — Կորիւնի գրութեան թուականը քննողները երկու բանակի կը բաժնուին. նախ անոնք որ այս գրութիւնը Վարդանանց պատերազմէն առաջ կը դնեն եւ երկրորդ անոնք որ յետոյ գրուած կը համարեն։ Առաջիններին կը պատկանի բանասէրներուն ամենամեծ մասը, ինչպէս Չամչեան, Գաթրճեան, Սարգսեան, Ճէքթէր, Թորոսեան եւ Նորայր. երկրորդին կը պատկանին Գարագաշեան եւ Մխիթար Աբեղեան։ Այս թուականը հաստատելու համար վճռական կռուան մը չունինք, ուստի խարխափումներով յառաջանալով պէտք է ճշդենք թէ ո՛ր սահմաններուն մէջ կրնայ գտնուիլ Կորիւն։

Ա. Մեսրոպ վախճանած է 439 թուականին, ուստի գրութիւնն այս թուականէն առաջ չկրնար ըլլալ։ Կորիւն կը պատմէ թէ սուրբին վախճանէն երեք տարի յետոյ Վահան Ամատունի անոր գերեզմանին վրայ մատուռ կանգնեց, ուստի կը հասնինք մինչեւ 442. տաճարին շինութիւնը կը նկարագրուի երբ «աշխարհիս... տաշածոյ վիմօք քանդակելով... սպասու վայելուչ զունազոյն պայծառութեամբ ոսկով եւ արծաթով եւ ականց պատուականօք»։ Կորիւն տեսած է այս փառաւոր շինութեան աւարտումը եւ գիտէ թէ Թովիկ անուն կրօնաւորն ալ նոյն տաճարին պաշտօնեայ նշանակուեցաւ. եթէ դոնէ մէկ տարի դնենք այդ շէնքին շինութեան համար, կը հասնինք արդէն 443 թիւը, որմէ առաջ չկրնար ըլլալ Կորիւն։ Նաեւ չկրնար գրուած ըլլալ 450—451 թուականէն յետոյ, որովհետեւ այս ժամանակները ծագած ըլլալով Վարդանանց պատերազմը, Վասակի ազգադաւ արարքները եւն. Կորիւն չէր կրնար այնպէս գովեստով խօսիլ Վասակի մասին, եւ անուանել «այր խորհըրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց, շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ... Մատուցեալ ըստ Աւետարանին փայլեցուցութեան եւն.»։ Նոյնպէս 451 թուին Յովսէփ կաթողիկոս գերի տարուելով Պարսկաստան

չէր կրնար այս թուէն առաջ խնդրել Կորիւնէն գրել Ս. Մեսրոբի վարքը։ Այսպէսով Կորիւնի գրութիւնը կը մնայ 443—450 թուականներուն մէջտեղ։

Այս վախճանին հասանք Ս. Մեսրոբի մահը դնելով 439 թուականին, որուն վրայ աւելի մանրամասն տես Ս. Մեսրոբի Կենսագրութիւնը. Գլուխ ԺԶ։ Բայց հին քննիչները սուրբին մահը 441 թուականին դնելով՝ բնական է թէ պիտի հասնէին 445—450 թուականներուն։ Ճիշդ այս թուերը կուտայ Գաթրճեան, Հանդէս ամս. 1887, էջ 10 (իսկ նոյն հեղինակին անցողակի տուած կարական 442 թուականը, Հանդէս 1889, էջ 24, երեւի սխալման արդիւնք է)։ Նոյնպէս Սարգսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, էջ 116—117. Ֆէթթէր 445-451. Թորոսեան 447—449։ — Նորայր Բիւզանդացի (Կորիւն վրդ. էջ 433) ճիշդ 443—444 թուին։

Գարագաշեան, Քննական Պատմ. Դ. 26 եւ Միսաքեան, Ագաթ. աղբիւրներից, էջ 25 Կորիւնի գրութիւնը կը դնեն Վարդանանց պատերազմէն յետոյ, ընդունելով թէ Կորիւն գիտէ Ղեւոնդեանց քահանայից չարչարանքը եւ Վահան Ամատունւոյ մահը, որ «Վարդանանց պատերազմից յետոյ Պարսկաստան աքսոր քշուածներից էր եւ մեռաւ հայրենիք վերադառնալուց յետոյ, ուրեմն ոչ առաջ 465 թուից»։

Այս ծանրակշիռ խնդրին վրայ կ'ուզենք խօսիլ մանրամասն.

Ղեւոնդեանց մասին կարկած տուող հատուածը Կորիւնի մէջ հետեւեալն է, որ թէ ընդարձակ եւ թէ համառօտ խմբագրութեամբ դէմ-առդէմ կը դնենք։

Ընդարձակ

«Եւ զնորին աշակերտ Թադիկ անուն՝ ղայր զգաստ եւ բարեպաշտօն, հանդերձ եղբարբք երանութեանն հասելոց՝ սպասաւոր սրբոցն ի փառս Աստուծոյ կարգէին, եւ գլխաւորս վերակացուս տեղապահս յայտ արարեալ հարցն կատարելոց որոց առաջինն Յովսէփ գլխաւոր ժողովոյն, եւ երկրորդն այլ աշակերտ Յովհան անուն, այր իսկ սուրբ վարդապետասէր եւ ճշմարտապատում։ Որում դէպ լինէր յետ վախճանի սրբոյն, բազում եւ ազգի ազգի փորձութեանց

Համառօտ

«Եւ զնորին աշակերտն զգաստ եւ բարեպաշտօն զԹադիկ սպասաւոր նորին կացուցանէին՝ այլ եւս եղբարբք՝ կատարել զհանապազորդ պաշտօնն։ Եւ որ վերակացուս ժողովրդեանն ըստ յաջորդութեան սուրբ հարցն՝ զՅովսէփ եւ զՅովհան կացուցանէին, այս ճշմարտասէրս եւ ողջախոհս, որոց դէպ լինէր յետ վախճանի սրբոյն ազգի ազգի փորձութեանց ի վերայ եկելոց ի բռնաւորաց, մենակեաց մենամարտիկ ի Պարսս ի Տիզբոնն քաղաքի վասն Քրիստոսի, յաղ-

եւ կապանաւոր մշտաց. մենամարտիկ երկպառակման բռնութեանն ի Տիզբոն քաղաքի, վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ համբերեաց. վասն որոյ եւ զխոստովանողական անուն ժառանգեաց, ի նոյն վերակացութիւնն դառնայր յերկիրն Հայոց»

թութեամբ բազմաւ. որոց եւ զխոստովանողական անուն ժառանգեալք, ի նոյն վերակացութիւնս վարդապետութեան դառնային յերկիրս Հայոց»

Այս հատուածին մէջ մեկնութեան կարօտ կէտերը հետեւեալներն են.

ա. Ի՞նչ կը նշանակէ «հանգերձ եղբարբք երանութեանն հասելոց», որուն դէմ համառօտն ունի միայն «այլ եւս եղբարբք». ըստ իս այս խօսքով պէտք է հասկնալ թէ միայն Թոդիկ չէր որ նորակերտ տաճարին պաշտօնեայ նշանակուեցաւ, այլ իրեն հետ նաեւ մէկ երկու կրօնաւորներ, որոնք արժանի եղած էին տանելու սուրբին օրհնութիւնը. ի հարկէ այնպիսի փառաւոր տաճարի մը համար մէկ կրօնաւորը բաւական չէր, եւ պէտք էր որ Թոդիկ ընկերներ ունենար։

բ. Եւ գլխաւորս վերակացուս տեղապահս յայտ արարեալ հարցն կատարելոց, որոց առաջինն...։ Որովհետեւ այս խօսքը նախորդէն միայն ստորակէտով մը բաժնուած է, կրնայ կարծուիլ թէ նախորդին շարունակութիւնն ըլլայ, այնպէս որ Յովսէփ եւ Յովհան ըլլան Թոդիկէ հետ նշանակուած պաշտօնեաները։ Բայց այսպէս չէ. երկու խօսքերուն մէջ կապ պէտք չէ ենթադրել, ինչպէս չէ ենթադրած նաեւ համառօտը՝ երկուքը իրարմէ վերջակէտով բաժնելով. Յովսէփ եւ Յովհան նշանակուեցան կաթողիկոսական տեղապահ, եւ «ժողովրդի վերակացու» (ըստ համառօտին)։ — «Յայտ արարեալ հարցն կատարելոց» ձեւով ալ պէտք է հասկընալ թէ կատարեալ՝ այսինքն վախճանեալ հայրերը (Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ) իրենց կենդանութեանը կամ մահուան ժամանակ նշանակած էին Յովսէփն ու Յովհանը՝ իբրեւ իրենց տեղապահ։

գ. Ո՞վ էր Յովսէփ. — Կորիւնի պատմութեան մէջ Յովսէփ անունը կը յիշուի հինգ անգամ, այն է էջ 1, 10, 20, 27 եւ 28։ Այս տեղերը յիշատակուած Յովսէփները երկու տարբեր անձնաւորութիւններ կը ներկայացնեն. մէկը Յովսէփ (կաթողիկոս) Վայոցձորեցին եւ միւսը Յովսէփ Պաղնացի։ Կորիւն կարծես յատուկ ջանք է գործ դրած ամէն անգամ պարզ որոշելու թէ որո՛ւ վրայ է խօսքը. այսպէս թէեւ առաջին անգամ էջ 1, կը յիշէ «առն միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ», բայց էջ 10 կ'ըսէ «Յովսէփ անուն ի Պաղնական տանէն», էջ 20 «ըզՅովսէփ, զոր ի վերոյն յիշեցաք», էջ 27 «Յովսէփ, զոր եւ ի սկզբան գրեցաք», էջ 28 «Յովսէփ գլխաւոր ժողովոյն». վերջին երկուքը Յովսէփ

կաթողիկոսը լինելով. պարզ է որ «ի սկզբան» գրուած Յովսէփն ալ, այսինքն Ս. Մեսրոբի վարքը խնդրողն ալ նոյն անձն է. իսկ միւս երկուքը (էջ 10, 20) կը ներկայացնեն Պաղնացին։

դ. «Որում դէպ լինէր...» ձեւն խօսքին մէջ յարաբերականը ո՞վ կը յարաբերէ, Յովսէ՞փ թէ Յովհան։ Անշուշտ Յովսէփի համար ըսուած չպիտի ըլլայ, քանի որ պատմութենէն գիտենք թէ Յովսէփ կաթուղիկոս Պարսկաստան գերի տարուելէն ետք՝ ա՛լ չվերադարձաւ, եւ այնտեղ 453 թուին նահատակուեցաւ։ Իսկ եթէ առանց նահատակութեան՝ միայն «խոստովանողական անուն ժառանգելոց եւ ի նոյն վերակացութիւնն դառնայր յերկիրն Հայոց», պէտք է որ այդ անձը Յովհանն ըլլայ։

Համառօտը հոս մեծ սխալ մը կը գործէ. Կորիւնի միտքը լաւ չըհասկնալով կը կարծէ թէ այն յարաբերականը երկուքին համար է, ուրով թէ՛ Յովսէփին եւ թէ Յովհանին կուտայ չարչարուիլ Տիզբոնի մէջ եւ յետոյ վերադառնալով Հայաստան, վերակացութիւնը նորէն ձեռք առնել։ Յովսէփի վերադարձը հակառակ է պատմութեան։

ե. Ո՞վ էր Յովհան. — Յովհան անունը Կորիւնի մէջ յիշուած է երկու անգամ. նախ էջ 10, «Յովհան անուն կոչէին, յեկեղեաց գաւառէն», իբրեւ գործակից Ս. Մեսրոբի՝ Առակաց գրքին թարգմանութեան մէջ. եւ երկրորդ այս վերջինս, որ Խոստովանող կը կոչուի։ Այս երկուքը իրարմէ տարբեր համարած են մեր բանասէրները. այսպէս Զարբհանալեան, էջ 272 կը խօսի Յովհան Խոստովանողի վրայ. իսկ էջ 274 կը խօսի Յովհան Եկեղեցացւոյն վրայ. Միսքճեան, Հանդ. Ամս. 1902, էջ 149 § 22 կը դնէ Յովհան, որ եւ Յոհան (Խոստովանողը), եւ § 23 Յովհան Եկեղեցացի։ Հ. Բ. Սարգիսեան, Ագաթ. էջ 112, Յովհան (Խոստովանողը) կը համարէ Մանդակունին, իսկ միւսը կը ճանչնայ իբրեւ Եկեղեցացի։ Թէ ի՛նչ պատճառներ կ'առիթեն բանասէրները այսպիսի բաժանում մտցնել, ինձ յայտնի չէ. եւ չեմ կարծեր որ իրաւացի լինի։ Ըստ իս վերջին Խոստովանողն ալ նոյն Յովհան Եկեղեցացին է։ Աւելի տարօրինակ կ'ըլլայ կարծել թէ Խոստովանողը Մանդակունին ըլլայ։ Զէ՞ որ այս պարագային Կորիւն դիտած պիտի ըլլար նաեւ Յովսէփ կաթուղիկոսի նահատակութիւնը, զոր անկարելի է թէ չյիշէր կամ գոնէ «երանելի» տիտղոսը չտար։

Այս հինգ կէտերը պարզելէ ետք, կը ճշտուի հատուածին իմաստը. Թաղիկ, եւ քանի մը ուրիշ կրօնաւորներ Ս. Մեսրոբի տաճարին պաշտօնեայ կը կարգուին. Յովսէփ Վայոցձորեցին եւ Յովհան Եկեղեցացին կ'ընտրուին տեղակալ եւ վերակացու հայրապետարանին, ինչպէս նշանակած էին Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ. Յովհան կը չարչարուի Տիզբոնի մէջ, բայց յաջողութեամբ կը վերադառնայ իր պաշտօնին։

Ինչէ՞ն կրնանք ենթադրել թէ Յովհան կը պատկանի Ղեւոնդեանց քահանայից խումբին. այս քահանայից, ինչպէս եւ սոցին հետ գերի

*գացող նախարարներուն անունները մի առ մի կը յիշէ Եղիշէ. Մատենագր.* 139. 150 *եւ Փարպ.* 1873. *էջ* 255—6. *բայց ասոնց մէջ չկայ Յովհան Ուստի այլեւ պէտք ըլլայ ենթադրել թէ Յովհանի չարչարանքը տեղի ունեցած է այն հալածանքներու միջոցին, որ Յազկերտ Բ. հանեց քրիստոնէութեան դէմ իր թագաւորութեան* 3*րդ կամ* 4*րդ տարիէն մինչեւ* 11*րդ տարին. Վարդանանց պատերազմէն առաջ. «Վասն այնորիկ դրդուեցոյց զբազումս ի սուրբ ուխտէն քրիստոնէից, էր՝ զոր բանիւք սպառնալեօք, էր՝ զոր կապանօք եւ տանջանօք, էր՝ զոր չարաչար մահուամբ վախճանէր... եւ մեծաւ անարգանօք տանջէր զամենեսեան» (Եղիշէ Մատ. էջ* 8)։

*Վահան Ամատունւոյն մահուան յիշատակութեան մասին կասկած յարուցանող հատուածն ալ հետեւեալն է, ըստ Միաբանի, Ագաթ. ձաղը. էջ* 25։

| *Ընդարձակ.* | *Համառօտ.* |
| --- | --- |
| *Իսկ բարեացապաշտին Վահանայ, յանկարծահաս կենաց անմենացուն լինէր, որ աշխարհածնութեան հայրենեացն ակնկալեան ոգի զըտանել, շնորհօքն Տեառ Այ մերոյ, մերձաւոր կենակից վայելէր. եւ զի ըստ օրինակի գրելոցս առ ի մէջ հարքն ի կատարումն դարձան* (*էջ* 28)։ | *Իսկ բարեացապաշտն Վահան յանկարծահաս կենաց, ապնջական ցանկալի ամ սրբոց լինէր, որ աշխարհածնութեանդ հայրենեացն ակնհակալ որդի դառնալ՝ շնորհօքն Տեառ մերձաւոր կենացն յաւիտենից լինէր։ Եւ արդ ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ զերանելեաց սուրբ հարցն...* (*էջ* 35)։ |

*Հատուածիս քննութիւնն ըրած է Թորոսեան, Բազմ.* 1897, *էջ* 114—5։ *Այս քննութենէն կ՚երեւի որ նախ ընդարձակին վերջին մասը «եւ զի ըստ օրինակի...» կապ չունի նախորդին հետ, այլ պէտք է անջատել եւ կցել յաջորդ վերջաբանին, ինչպէս ունի եւ Կորիւնի համառօտը։ Երկրորդ՝ խօսքը ակնարկութիւն է ո՛չ թէ Վահանի մահուան, այլ տեսակ մը զովասանք իւր այն ջերմեռանդ գործքին համար, որով Վահան արժանի եղաւ երկնային կեանքի պարգեւներուն, «ինքզինքը մաշանց եւ արժանաւոր ըրաւ երկնից արքայութեան. կ՚ենթադրուի տակաւին աշխարհիս վրայ գտնուելովը։ Այս մեկնութիւնը կը հաստատուի Թորոսեանի մէկ սրամիտ նկատողութեամբ. Ագաթանգեղոս (Վենետ.* 1835, *էջ* 18) *Կորիւնի այս հատուածը առած եւ ադուցած է իւր յառաջաբանին մէջ, այս ձեւով.*

*«Իսկ բարեացապարտն Տրդատ յանկարծակամ կենացն ապնջական ցանկալի ամենեցունցն լինէր, որ աշխարհածնունդ հայրենեաց ոգի*

գտանէր շնորհօքն Աստուծոյ, մերձաւոր կենաց վայելէր»։

Հատուածը յարմարցուած է Տրդատի վրայ, «եւ այնպիսի կերպով՝ որ բնաւ տարակուսելու տեղի չի մնար՝ թէ մահուան վերայ չէ խօսքն, այլ «շնորհաց կամ հոգեւոր կենաց» մասին է. որովհետեւ անմիջապէս նախորդ խօսքն Ս. Լուսաւորչի քարոզութեան եւ Հայաստանի դարձին վերայ է»։

Այսպէսով կրնանք հաստատ համարել թէ Կորիւնի գիրքը ի զուր կ'ենթադրուի գրուած Վարդանանց պատերազմէն շատ յետոյ, այլ իր գրութիւնը կը մնայ 443—450 թուականներուն մէջտեղ։

4. Ի՞նչ յարաբերութիւն ունի Կորիւն Ագաթանգեղոսի եւ Բուզանդի հետ. — Շատոնց նկատուած է թէ ո՛չ միայն ոճի եւ լեզուի մեծ հանգիտութիւն կայ Ագաթանգեղոսի, Բուզանդի, Կորիւնի եւ Մակաբայեցոց մէջ, այլ եւ այնպիսի խոշոր հատուածներ կան ասոնց մէջ ամբողջութեամբ նման, որ անկարելի է փոխադարձ կապ չընդունիլ։ Հիմայ արդէն հաստատուած է, թէ Ագաթանգեղոս եւ Բուզանդ են բանաքաղ եւ ո՛չ թէ Կորիւն, որովհետեւ այս նման հատուածները շատ աւելի բնական են Կորիւնի մէջ, քան միւսներուն։ Նորայր Բիւզանդացի իւր վերջին ընդարձակ աշխատութեան մէջ (Կորիւն Վարդապետ եւ նորին թարգմանութիւնք) ամբողջովին կ'զբաղի այս խնդրով. եւ այս աշխատութիւնները (նաեւ Եւթաղ), ընդ ամէնը հինգ բնագիր համեմատելով միմեանց եւ Ոսկեդարու միւս 42 մատենագրութեանց հետ, կը գտնէ 624 նմանութիւններ եւ նոյնութիւններ ոճի, բառի, լեզուի, դարձուածի, որով կ'ապացուցանէ թէ Կորիւն՝ հեղինակ «Վարք Ս. Մեսրոպայ» երկին, է նաեւ թարգմանիչ Ագաթանգեղոսի, Փաւստոսի, Մակաբայեցոց եւ Եւթաղի։ Այսպէսով Կորիւն կը դառնայ ամենախոշոր մատենագիրներէն մէկը հին հայ գրականութեան մէջ։

## Ջ. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

(տպ. 1873 Վենետիկ)

Մեր աղբիւրներուն մէջ Կորիւնէն ետք Ս. Մեսրոպին ժամանակով ամէնէն մօտիկը Ղազար Փարպեցին է. այս պատմագրին վրայ ընդարձակ քննութիւն մը ունի Դր. Խալաթեան, Ղազար Փարպեցի եւ գործք նորին, Մոսկուա, 1883. ուրիշ մանր գրութիւններ ունին Գաթրճեան, Հանդ. Ամս. 1887, էջ 11—12, Միւլլէր Γazar Pharbetshi und Koriun, VZKM. V. 36—38. Թրգմ. Հանդ. Ամս. 1891, էջ 178—9 եւ ուրիշ մանր մունր քննութիւններ. բայց ամէնէն կարեւորն է ինձ համար Միաբանի մէկ յօդուածը «Ղազար Փարպեցու ձեռագիրները», Արարատ, 1901, 542—9, որ կը խօսի յատկապէս գրելու գիւտին վրայ եւ որուն մասին պիտի խօսինք քիչ մը վարը ընդարձակօրէն։

Խալաթեանի քննութեամբ (էջ 7) Փարպեցի ծնած է 440—443 տարիներուն մէջ, ուստի Ս. Մեսրոբի մահուանէն յետոյ։ Նա իւր պատմութիւնը գրեց դարձեալ ըստ Խալաթեանի ճիշտ քննութեան՝ 490—509 թուականներուն մէջտեղ. Ս. Մեսրոբի եւ գրերու գիւտին վրայ կը խօսի էջ 39—49 եւ 105, 106, որոնց մէջ միշտ աչքի առջեւ ունի եւ իբրեւ աղբիւր կը գործածէ Կորիւնի գիրքը, քանի մը տեղ ալ յատկապէս յիշելով անոր անունը. ինչպէս էջ 35՝ «Եւ զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի պատմութենէ գրոց առն ցանկալւոյ Կորեան՝ աշակերտի նորին երանելւոյն Մաշթոցի, կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա. եւ զիւր հայերէն նշանագրացն, թէ երբ կամ ուր, եւ կամ յոյր ուրուք ձեռն գտանէ... զոր կարդալով գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգեւոր Կորիւն. ուստի եւ մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ։» Կորիւն կը յիշուի նաեւ էջ 103, 205, զոր աւելորդ համարեցինք մէջ բերել: Վերոյիշեալ էջերուն մէջտեղերը պարունակուած մասերը կը վերաբերին նոյն ժամանակի քաղաքական անցքերուն։ Իսկ էջ 205 կը պատմէ համառօտիւ թէ ինչպէս Ս. Մեսրոպ, իւր Կորիւն եւ Արձան անուն աշակերտներուն հետ Ղեւոնդ երէցի գնացած ժամանակ տեսեր էր լոյս՝ որ ճառագայթներ էր անոր չուրջը, որով իմացած էին թէ Ղեւոնդ նահատակութեամբ պիտի վախճանի։

Գրերու գիւտին մասին Փարպեցւոյն մէջ էջ 39—41 բաւական մեծ հատուած մը կայ, որ տառացի նման է Խորենացւոյն եւ միչև բանաձեւերու մէջ վիճաբանութեան նիւթ է դարձած, թէ արդեօք ո՛վ որմէ փոխ առած է։

Այն ժամանակ՝ երբ Խորենացւոյն վրայ ամենեւին կասկած չկար եւ ամէն մարդ կ'ընդունէր զայն իբրեւ անսասան կերպով Ե. դարու հեղինակ՝ երիցագոյն քան Փարպեցին, պարզ է որ պէտք է ընդունուէր նաեւ թէ Փարպեցին էր որ այն հատուածը փոխ առած էր Խորենացիէն. բայց երբ բանասէրները կասկած յայտնեցին Խորենացւոյն վաւերականութեան վրայ եւ համարեցին զայն Զ—Է դարերու գրող, չուտով դերերը փոխուեցան, եւ Խորենացին եղաւ արտագրող Փարպեցիէն։

Անկախաբար Խորենացւոյն ժամանակէն, առաջին անգամ Ս. Վ. Գարոնեան (Երկրագունտ, 1884—5, մասնաւորապէս էջ 492, ծանօթ. 2) քննութեան առնելով այս խնդիրը, վճռեց թէ Փարպեցւոյն մէջ գտնուած այն հատուածը ամենեւին Փարպեցւոյնը չէ, այլ Խորենացիէն կտոր մը՝ զոր յետին արտագրողները մուծեր են Փարպեցւոյն Պատմութեան մէջ. Գարոնեան իւր վճիռը կը հիմնէր Մեսրոբ անունին վրայ. Փարպեցին իւր ամբողջ աշխատութեան մէջ՝ ընդարձակ Կորիւնի նման միշտ գրէ Մաշթոց (ընդ ամէնը 17 անգամ), բայց միայն այս հատուածին մէջ Խորենացւոյն հետ ունի Մեսրոբ. ուստի չկրնար հարազատ ըլլալ: Բայց ճիշտ այս փաստին վրայ հիմնուելով հակառակ ենթադրութիւն կը հանէ

Միւլլեր WZKM. V. 36–38. քանի որ Փարպեցին, կը մտածէ Միւլլեր, այլուր միշտ Մաշթոց ունի Կորիւնին հետ՝ եւ միայն հոս Մեսրոպ ձեւը կը գործածէ, անկէ կը հետեւի թէ յիշեալ բոլոր տեղերը ազատուած է Կորիւնէն, եւ միայն այս հատուածն է որ Խորենացիէն հանած է։

Վճռական հարուածը տալ եւ խնդիրը փակել վերապահուած էր Միսաքեանին (Արար. 1901, էջ 542—9)։ Այս յօդուածին մէջ Միսաքեան կը ցուցնէ նախ թէ Ղազարի պատմութեան մինչեւ այժմ եղած տպագրութիւնները եւ անոնց իբրեւ հիմ ծառայած ձեռագիրները բոլորն ալ արտագրուած են E = Էջմիածնի մատենադարանի թիւ 1688 (Կարենեան 1646) ձեռագրէն. այս ալ յիշատակարանի վկայութեամբ Էջմիածնի մէջ 1774 թուին արտագրուած է ուրիշ յաւագոյն ձեռագրէ մը = B, որ այժմ կը գտնուի նոյնպէս Էջմիածնի մատենադարանին մէջ եւ կը կրէ Գէորգեան 611 թիւը։

Քննական ուսումնասիրութեան տեսակէտով ամենեւին նշանակութիւն չունին ուրեմն E-ն եւ իր յաջորդները, եւ պէտք է միայն դիմել B-ին։ Այդ վերոյիշեալ կասկածելի հատուածը ամբողջովին գոյութիւն չունի B ձեռագրին մէջ, որ նախորդ եւ յաջորդ հատուածները միանգամ կը շարունակէ, առանց յապաւման կամ ընդմիջարկութեան հետք կրելու։ Ինչ է տեղի ունեցած ուրեմն։ E ձեռագրին արտագրողը, որ ըստ Միսաքեանի՝ ամենայն հաւանականութեամբ Օշականցի Ղուկիասեան դպիրն է, B-էն արտագրած ժամանակ, ուզելով գրերու գիւտին վրայ աւելի մանրամասն տեղեկութիւն ունենալ, դիմած է այն ժամանակ ծանօթ տպագրեալ Խորենացւոյն (տես Ա. 1695 Ամստերդամ, կամ տես Բ. 1752 Վենետիկ) եւ անկէ ներմուծած է յիշեալ հատուածը՝ առանց յիշատակութեան։ Հետաքրքիր է որ նոյն տպագրութեան մէջ տառ անուններուն փի-ին տեղ շատ անգամ գրուած է փ̈ եւ ուրեմն միայն փ. արտագրողը ասոր ալ բոլորովին հաւատարիմ գտնուած է։ E-էն արտագրուած ձեռագիրները եւ մանաւանդ Վենետիկի տպագիրները հետզհետէ կոկած են նոյն նորամուտ հատուածը, որ այսպէս հետզհետէ փոխուելով՝ փոքր ինչ հեռացած է նախնական տպագրին ձեւէն։

Ստորեւ կը դնենք նոյն հատուածը համեմատութեան համար չորս օրինակի մէջ. նախ Խորենացւոյն 1695-ի տպագրութիւնը, երկրորդ B ձեռագիրը, երրորդ Ղազարի առաջին տպագրութիւն (Վենետիկ 1793) եւ չորրորդ Ղազարի երկրորդ տպագրութեան (Վենետիկ 1873) տարբերութիւնները, հանելով Միսաքեանի նոյն յօդուածէն։

| Խորենացի | Ղազար Փարպեցի | | |
| --- | --- | --- | --- |
| Ա. տպ. էջ 409—410 | B. էջ 14բ—15բ. | Ա. տպ. էջ 27—9. | Բ. տպ. էջ 39—41. |
| տեղեկացեալ՝ գիտացին ոչ լինել բաւական՝ այնու նշանագրօք՝ ըստոյգ հոլովել զհեգենայ բարբ Հայկականաց հագներգաբար, մուրացածիւն այնուիկ՝ գծագրութեամբ։ | բայց տեղեկացեալ գիտացին, ոչ լինել բաւական այնու նշանագրօք, ստոյգ հոլովել զհեգենայ բարբ հայկականաց հագներգաբար մուրացածիւն այնուիկ՝ գծագրութեամբ։ | ոչ լինել | ոչ լինել |
| [Պրակ ծզ] | | | |
| Զկնի այսորիկ՝ ինքնին Մեսրովբ իջանէ ի Միջագե(տ)ս՝ հանդերձ աշակերտօք՝ առ նոյն Դանիէլ. եւ ոչ՝ աւելի ինչ գտեալ՝ քան զառաջինն. անցանէ յԵդեսիայ՝ առ Պղատոն ոմն՝ ճարտասան Հեթանոս, Իշխան Դիւանին. եւ Նր խնդութեամբ ընկալեալ. եւ զոր ինչ մի | Զկնի այսորիկ ինքնին Մեսրովբ իջանէ ի Միջագետս, հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, եւ ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն. անցանէ յԵդեսիայ առ Պղատոն ոմն ճարտասան հեթանոս, իշխան դիւանին. եւ Նր խնդութեամբ ընկալեալ. եւ զոր ինչ մի- | | յԵդեսիա |

| | | | |
|---|---|---|---|
| անգամ ի միտ առնոյր բան Հայե- | անգամ ի միտ առնոյր բան հայե- | | |
| րէն՝ յինքն առեալ, եւ շատ ջա- | րէն, յինքն առեալ եւ շատ ջա- | | |
| նացեալ՝ եւ ոչ օգտեալ, զազգաու- | նացեալ եւ ոչ օգտեալ. զազգաու- | | |
| թիւն՝ խոստովանեաց Հռետորն, | թիւն խոստովանեաց հռետորն. եւ | | |
| եւ զայլ ոմն առելով՝ յոյժ հասու՝ | զայլ ոմն առելով յոյժ հասու վար- | | |
| Վարդապետ իւր լեալ առաջագոյն, | դապետ իւր լեալ յառաջագոյն. եւ | յառաջագոյն | յառաջագոյն |
| եւ ապա՝ առեալ զճարտարացն | ապա առեալ զճարտարացն գրեան | | |
| գրեան ի նոյն Դիւանէն Եդեսեայ՝ | ի նոյն դիւանէն Եդեսեայ. եւ | | |
| եւ գնացեալ Քրիստոնէութեան | գնացեալ քրիստոնէութեան հա- | | |
| հաւատալ, որոյ անուն՝ Եպիփա- | ւատալ՝ որոյ անուանն Եպիփա- | անուանն | անուանն |
| նոս. զոր խնդրեալ՝ զացեալ յուսուցանել | նոս. զոր խնդրեալ զացեալ յուսուցանել | Եպիփանոս | Եպիփանոս |
| զփափագգ քու Յայնժամ Մեսրով- | զփափաքդ քու Յայնժամ Մեսրով- | զփափաքգ | զփափաքդ |
| բայ՝ օգնականութիւն ի Բաբելոնէ | բայ օգնականութի ի Բաբելոնէ Ե- | | |
| Եպիփանոսէ՝ գտեալ, եւ անցեալ | պիփանոսէ գտեալ. եւ անցեալ | | |
| ընդ Փիւնիկէ՝ ի Սամոս դիմէ. | ընդ Փիւնիկէ. ի Սամոս դիմէ. | | |
| քանզի՝ Եպիփանու վճարելով | քանզի Եպիփանու վճարելով ըզ- | | |
| զկենցաղս Թողեալ լինի աշակերտ | կենցաղս. Թողեալ լինի աշակերտ | | |
| մի անուանեալ՝ Հռուփանոս հրա- | մի անուանեալ Հռուփանոս հրա- | Հռուփանոս | Հռուփանոս |
| շալի արուեստիւ Հելլեն գրչու- | շալի. արուեստիւ՝ հելլեն գրչու- | գրչութեան | գրչութեան |
| թեամբ՝ որ ի Սամոս էր միայնաց- | թեան, որ ի Սամոս էր միայնաց- | | |

եալ. առ սա երթեալ Մեսրովբայ՝
եւ յայսմ եւս անչափ միացեալ, յա-
ղօթս ապաւինի. եւ տեսանէ ոչ ի
քուն՝ երազ, եւ ոչ յարթնու-
թեան՝ տեսիլ. այլ ի սրտին գոր-
ծարանի երեւութացեալ հոգւոյն
աչաց. թաթ ձեռին աջոյ՝ գրելով
ի վերայ վիմի. զի՝ որպէս ի ձեան
վերջք գծին ունէր քարն. եւ ոչ
միայն՝ երեւութացաւ, այլ՝ եւ
հանգամանք ամենայնիցն, որպէս՝
յաման ինչ՝ ի միտս նորա հաւա-
քեցաւ. եւ յարուցեալ յաղօթիցն՝
եստեղծ զնշանագիրս մեր՝ հան-
դերձ Հռուփանոսիւ. կերպաձեւեալ
զգիրն՝ առ ձեռն պատրաստ Մես-
րովբայ փոխադրելով զհայերէն
Աթութայսն՝ ըստ անսայթաքու-
թեան Սիլլաբայիցն ի Հելլենաց-
ւոյն.

եալ. Առ սա երթեալ Մեսրովբայ,
եւ յայսմ եւս անչափ միացեալ.
յաղօթս ապաւինի. եւ տեսանէ,
ոչ ի քուն երազ, եւ ոչ յարթնու-
թեան տեսիլ. այլ ի սրտին գոր-
ծարանի երեւութացեալ հոգւոյն
աչաց. թաթ ձեռին աջոյ գրելով
ի վերայ վիմի. զի որպէս ձեան
վերջք գծին ունէր քարն. եւ ոչ
միայն երեւութացաւ, այլ եւ հան-
գամանք ամիցն, որպէս յաման ինչ
ի միտս նորա հաւաքեցաւ, եւ յա-
րուցեալ յաղօթիցն եստեղծ զնշա-
նագիրս մեր. հանդերձ Հռուփանո-
սիւ կերպաձեւեալ զգիրն առ ձեռն
պատրաստ Մեսրովբայ. փոխադրե-
լով զհայերէն աթութայսն. ըստ
անսայթաքութեան սիլլաբայիցն ի
Հելլենացւոյն։

| | |
|---|---|
| չիֆ աչաց. | չիֆ աչաց. |
| ի ձեան | ի ձեան վերջք գծին կուտակեալ |
| ամիցն | ամենիցն |
| Հռուփանոսիւ | Հռոփանոսիւ |
| սիղոբայիցն | սիղոբայիցն |

Այսպէսով կը վերջանայ սոյն աղճատ խնդիրը, որ այնքան ժամանակ նեղութիւն է պատճառած բանասէրներուն, եւ որուն վերադառնալ այլ եւս երբեք պէտք չկայ։

## 3. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

(տպ. Տփխիս, 1881)

Մեր երրորդ հիմնական աղբիւրն է Խորենացին, որ թէեւ ժամանակակից չէ, բայց բոլոր յաջորդ դարերու պատմագիրներուն համար ծառայելով իբրեւ գլխաւոր աղբիւր՝ մեծ նշանակութիւն ունի ։ Խորենացին ազդած է ո՛չ միայն յաջորդ հեղինակներուն վրայ, այլ եւ իրմով ուղղուած եւ սրբագրուած են յաջորդ դարերուն մէջ՝ իրմէ առաջ եղած հեղինակները։ Ասոր օրինակը տեսանք Փարպեցւոյն, բայց մանաւանդ Կորիւնին մէջ, ուր ամբողջ նոր խմբագրութիւն մըն է կազմուած՝ Խորենացւոյն հետեւողութեամբ։

Գիրերու գիւտին վրայ Կորիւն եւ Ղազար թէեւ միահետ աւանդ ընդհատման կը խօսին, բայց այսպէս չէ Խորենացին. Խորենացին ամբողջ Մեսրոպի վարքը եւ գրերու գիւտը մաս մաս բաժնելով խառնած է պատմական-քաղաքական ուրիշ խնդիրներու մէջ, սկսելով Երրորդ դպրութեան ԽԷ գլխէն մինչեւ ԿԷ գլուխը, որ իր պատմութեան վերջն է, այսպէս Գլ. ԽԷ «յաղագս երանելոյն Մեսրոպայ», ուր կը պատմուի Ս. Մեսրոպի աշխարհական կեանքը, միայնակեցութիւնը, Գողթն քարոզութիւնը եւ գիրերու պէտքն զգալը. Գլ. ԽԹ՝ Ս. Սահակ կաթողիկոս կը նստի, աշակերտներ կը հաւաքէ իրեն կուգայ Մեսրոպ եւ առանց յաջողութեան կը բաժնուի. Գլ. ԾԲ՝ Դանիէլեան նշանագիրները եւ երկամեայ փորձը. Գլ. ԾԳ՝ Ս. Մեսրոպի դիմումները եւ տառերուն գիւտը. Գլ. ԾԴ՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից լուսաւորութիւնը. Գլ. ԾԷ՝ Ս. Մեսրոպի երթը Բիւզանդիոն եւ Սահակի թղթակցութիւնները. Գլ. ԾԸ՝ Արեւմտեան Հայոց լուսաւորութիւնը. Գլ. Կ՝ Մեսրոպի երկրորդ ճանապարհորդութիւնները եւ թարգմանիչներու մեկնումը. Գլ. ԿԱ՝ Եփեսոսի ժողովը, Ս. Գրքի թարգմանութիւնը. Գլ. ԿԶ՝ Սահակ կը քաշուի Բագրեւանդ, Ս. Մեսրոպ կը մնայ Վաղարշապատ. Գլ. ԿԷ՝ սուրբերուն վախճանը։ Ասոնցմէ դուրս թողուած գլուխները միայն քաղաքական պատմութիւնները կը պարունակեն եւ կապ չունին գրական գործունէութեան հետ.

## 4. ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ

(տպ. Մոսկուա, 1860)

Մեր մատենագրութեան պատմութեան մէջ Կաղանկայտուացին թէեւ համարուած է Է. դարու հեղինակ, բայց նոր քննութիւնները ցոյց տուին

թէ Կաղանկայտուացւոյն անունով հասած երկը միացում է երկու տարբեր գործերու. առաջինը կը պարունակէ Ա. եւ Բ. դպրութիւնները, որ կազմած է բուն Մովսէս Կաղանկայտուացին՝ հեղինակ Է. դարու. իսկ երրորդ դպրութիւնը կազմած է Մովսէս Դասխուրանցին, որ Ժ. դարու հեղինակ է։ Ս. Մեսրոպի եւ գրերու գիւտին վրայ կը խօսի միայն Կաղանկայտուացին, իսկ Դասխուրանցին՝ իբրեւ հեռու ժամանակի մարդ, չզբաղիր այս խնդրով. ուրեմն խօսքով մեր նիւթին համար պէտք եղած տեղեկութիւնները կրնանք քաղել միայն Ա. եւ Բ. դպրութիւններէն, իսկ երրորդ դպրութեան մէջ միայն երկու տեղ կը յիշուի Ս. Մեսրոպ հարեւանցի կերպով. այսպէս «Տէր Երեմիա (կաթողիկոս Աղուանից)։ — Ի սորա աւուրս արար գիր Աղուանից երանելին Մեսրոպ, որ եւ Հայոց եւ Վրաց եւս նշանագիր ջանիւ մեծաւ»։ — «Տէր Սղիազար, ամս վեց, յեպիսկոպոսութենէն Շաքւոյ։ — Սա եգիտ զսուրբ խաչն՝ զծածկեալն ի Մեսրոպայ ի Գիս գեօղն, եւ ի նոյն կենարար փայտէն մասն առեալ եդ ի հարիւր քսան դահեկանի ոսկւոյ, եւ գրեաց ի վերայ, Եթէ Սղիազարու է. եւ կարգ եդ յոր խաչին տօնել ի Գիս (Գլ. ԻԴ, էջ 275—6)։»

Ընդարձակ կը խօսի Կաղանկայտուացին Մեսրոպի վրայ. Աղուանից գործունէութեան մասին նա կուտայ այնպիսի տեղեկութիւններ, որոնց համար ի զուր է փնտռել ուրիշ որեւիցէ աղբիւրի։ Այս տեղեկութիւնները նա քաղած է նախկին գրչագիր պատմութիւններէ, որոնք իր ժամանակ ցանուցիր կը գտնուէին Աղուանից երկրին այլեւայլ վանքերուն մէջ։ Թէ որքան Կաղանկայտուացին հաւատարմութեամբ վարուած է իւր այս աղբիւրներուն հետ, չենք կրնար գիտնալ. միայն որովհետեւ ինքը յայտնի է իբրեւ շատ միամիտ եւ առասպելախօս անձ, ուստի պէտք է իւր տուած տեղեկութիւններուն հետ ալ մեծ զգուշութեամբ վարուիլ։

Կաղանկայտուացւոյն մեզ վերաբերեալ գլուխները հետեւեալներն են.

Հատոր Ա.

Գլուխ ԻԷ. — Յաղագս սրբոյն Մեսրոպայ եւ ընկերաց նորա պատմութիւն վիպասանաբար։

Գլուխ ԻԸ. — Շարագրած յաղագս աշակերտաց սրբոյն Մաշտոցի ընդ նորգոյս զրուցատրաբար։

Գլուխ ԻԹ. — Դիմումն հիւսիսականացն յամենայն սահմանս Աղուանից, Հայոց եւ Վրաց, եւ վկայութիւն աշակերտացն սրբոյն Մեսրոպայ։

Գլուխ Լ. — Հաւատալն մեծի զօրավարին Թորգեան ի Քրիստոս, թէ նա է Աստուած, եւ նահատակիլ նորա զօրօքն եւ որդւովքն եւ քահանայական դասուքն յիւրմէ Թագաւորէն յաշխարհին Աղուանից։

Հատոր Բ.

Գլուխ Գ. — Գալուստ Մեսրոպայ վարդապետի առ Արսվաղէն Աղուանից արքայ եւ առնել զգիրս եւ կարգել վերատին դպրոցս եւ զհաւատս

հաստատել ի տանս Աղուանից եւ բառնալ զմիացեալ տղանդոսն։

Գլուխ ԻԹ. — Տեսիլ միանձնացելոյ առն Աստուծոյ Իսրայելի ի վերայ Մաշտոցի սրբոյ եւ նահատակութեան աշակերտացն. եւ գիւտ սրբոյ խաչին, որ ի Գիսն էր։

Գլուխ Լ. — Պատճէն թղթոյն, որ գրեցաւ յեպիսկոպոսացն ի Դաւթէ եւ ի Ցօվելայ եւ ի մեծ ժողովարանէն, թէ որպէս եցոյց Աստուած զմեծ սքանչելիսն։

Գլուխ ԼԱ. — Առ այս պատասխանիք եպիսկոպոսացն՝ ի հայրապետէն եւ յիշխանէն։

Գլուխ ԼԲ. — Ցաղագս օրհնեալ առն Իսրայելի քահանայանալոյն, եւ գիւտ սրբոյ խաչին վիպասանումն զրուցատրաբար։

## 5. ՓՈՔՐ ԿՈՐԻՒՆ
(տպ. Վենետիկ. 1854)

Այս աշխատութեան վրայ արդէն պէտք եղած չափով խօսած ենք վերը § 1, ուստի աւելորդ կը համարենք նորէն կրկնել այստեղ։

Իբր ամփոփում կրնանք յիշեցնել, թէ Փոքր Կորիւնը Զ—Ը դարերու յերիւրում մըն է ձեւուած ընդարձակ Կորիւնին վրայէն՝ առօր զանազան կէտերը սրբագրելով ըստ Խորենացւոյն։

## 6. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
վասն սրբոյն Սահակայ հայրապետին եւ Մեսրովբայ վարդապետին
(տպ. Վենետիկ 1853)

Փոքրիկ գրութիւն մըն է, որ հրատարակուած է Վենետիկ 1853, Սոփերքի երկրորդ հատորին մէջ, եւ կը բռնէ 5—42 էջերը. աշխատութեան հրատարակութեան, գործածուած ձեռագիրներուն վրայ եւս ամենեւին տեղեկութիւն չկայ. գրուածքը նոյնպէս ո՛չ յառաջաբան ունի եւ ոչ յիշատակարան, այլ ուղղակի կ'սկսի «Ցետ ամաց հնգից վախճանի հայրապետն մեծ Ասպուրակէս եւ յաջորդէ... Սահակ եւն»։

Գրուածքս յատուկ պատմական աշխատութիւն մը չէ, ինչպէս վերնագիրը կարծել կուտայ, այլ ճառ կամ ներբողեան, պատրաստուած Ս. Սահակի տարեկան տօնախմբութեան մը առթիւ. այս բանը պարզօրէն կը ցուցնէ գրուածքին վերջաբանութիւնը (էջ 42). «Եւ այժմ արդ եկայք եւ մեք միաբան ժողովեալքս փառաւորեալքս ի փառս փառօք պսակեալ հարցն մերոց սրբոց. զփառաւորիչն նոցա զՔրիստոս փառօք փառաւորեսցուք. որ է օրհնեալ, գովեալ, բարեբանեալ, եւ առաւել փառաւորեալ եւ երկրպագեալ յամենայն արարածոց իւրոց. ընդ Հօր եւ ընդ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից»։

Այսպէսով գրուածքս կը մտնէ Խորենացւոյն Վարդավառի ճառին, Հախախմեանց ներբողեանին եւ նմաններու շարքը. եւ երբ այն ունի ոգեւորեալ, բանաստեղծական լեզու, շատ աւելի զգածուած քան Փոքր Կորիւնը եւ ուրիշներ։

Գրուածքիս հեղինակը առհասարակ օգտուած է Խորենացւոյն պատմութենէն, թէեւ չի յիշեր զայն. բայց ի զուր, որովհետեւ կը ճանչնայ զինքը (էջ 14) Թարգմանիչներու շարքին մէջ. «յորոց ընտրեցին թուով վաթսուն յաշակերտելոցն... յորոց էր մեծն Մովսէս Խորենացին»։ Բազմաթիւ են այնպիսի հատուածներ, որոնք ուղղակի Խորենացիէն են. յիշենք առնուազն քանի մը հատը.

էջ 9. Եւ տեսանէր սուրբ եւ երջանիկ վարդապետն Մեսրովբ, ոչ ի քուն երազի եւ ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի գործարանի սրտին թաթ ձեռին՝ զի գրէր.

Խոր. ԾԳ. Եւ տեսանէ ոչ ի քուն երազ եւ ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երեւութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով...

էջ 18. Ցորժամ դարձան ի մեծայամ ուղեւորութենէն, ոչ գտին զառաքիչսն իւրեանց, զի վախճանեալ էին սուրբքն, եւ բարձեալ թագաւորութիւնն, քայքայեալ վայելչութիւնն, եւ սպառեալ ուսումնասիրութիւնն, աղաւաղեալ կարգաւորութիւն եւ բազմացեալ անկարգութիւն, նսեմացեալ ճշմարտութիւն, եւ զօրացեալ ստութիւն։

Խոր. ԿԸ (Ողբը). զի բարձաւ թագաւոր եւ քահանայ, խորհրդական եւ ուսուցող, վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դղրդեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։

Գրութիւնս շատ աւելի մեծ նմանութիւն ունի Յովհաննէս Կաթողիկոսին, քան Խորենացւոյն հետ. այս նմանութիւնը ո՛չ թէ հոս ու հոն ցրուած այս կամ այն հատուածին մէջ է, այլ ամբողջ աշխատութեան, սկիզբէն մինչեւ վերջ։ Այսպէս Յովհ. Կաթ. Գլուխ ԺԴ, կ՚ըսէ «Յետ այսորիկ ապա վախճանեալ հայրապետն մեծ Սապուրակէս» եւ ճիշդ նոյն ձեւով մեր անանուն հեղինակը կ՚ըսէ «Յետ ամաց հնգից վախճանի հայրապետն մեծ Սապուրակէս». եւ ամբողջ գիրքը կը շարունակուի մինչեւ վերջ քայլ առ քայլ բառ առ բառ հետեւելով Յովհաննէս Կաթողիկոսին։ Տարբերութիւնը որ կայ երկու գրուածներուն մէջ, այն է որ տեղ տեղ անանունը մեծ մեծ ողբեր, տեսութիւններ, կրօնական կամ բանաստեղծական մտածութիւններ կ՚աւելցնէ. բայց անմիջապէս որ տեսութիւնը կը վերջանայ, ընդհատուած նախադասութիւնը ամենայն

կանոնաւորութեամբ կը շարունակուի մինչեւ նոր տեսութիւն մը։ Եւ որպէսզի ըսածս լոկ չափազանցութիւն մը չըլլայ, բերենք գրքին սկիզբէն մաս մը երկուքին համեմատութեամբ նոյնութիւնը աւելի պարզ ցուցնելու համար։

Պատմ. էջ 5—7

Յետ ամաց հնգից վախճանի հայրապետն մեծ Ասպուրակէս. եւ յաջորդէ զաթոռ պատրիարքութեանն որն Սահակ որդի մեծին Ներսեսի. եւ վասն զի աստուածապէս սա գոլով ծնունդ առաքինութեան. յիրաւի ապա զհետ նորա ընթանայր սա եւ արդար վարուց հանդէսք. որ յաշխարհի գոլով, եւ իբրեւ զանապատաւորս ամենայն հեզանաց հանդիսին ընդ կարգս աշխարհիս անցանէր, մշտնջենաւորունչ աղօթիւք հանդերձ իւրօքն աշակերտելօք կատարեալ զպաշտօն բարեկարգութեանն, պինդ ունելով զղեակս եկեղեցւոյ, կարգաւորելով միշտ պայծառապէս ըստ օրինի զամենայն կանոնական հրամանի.

Յովհ. Գլ. ԺԳ.

Յետ այսորիկ ապա վախճանեալ հայրապետն մեծ Ասպուրակէս, որ կալաւ զաթոռ Հայրապետութեան զամս հինգ, ի տեղի նորա յաջորդէ արքայ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսեսի։ Եւ վասն զի սա աստուածապէս գոլով ծնունդ առաքինութեան, յիրաւի ապա զհետ նորա ընթանայր սա եւ արդար վարուց հանդէսք, որ յաշխարհի գոլով եւ իբրեւ զանապատաւորս ամենայն հեզանաց հանդիսիւ ընդ կարգս աշխարհիս անցանէր մշտնջենաւորունչ աղօթիւք հանդերձ իւրովք աշակերտօքն կատարեալ զպաշտօն բարեկարգութեանն։

Այս տեղ առաջինը կը խօսի երեսէ մը աւելի, բայց երեսը վերջանալով՝ երկու հեղինակները իրարու կը միանան դարձեալ հետեւեալ կերպով.

Եւ յայսմ վայրի լինէր հարկ վասն խնդրոյ իրիք գնալ սրբոյն Սահակայ առ Արտաշիր Պարսից արքայ. եւ մեծարի առ ի նմանէն յաւէտ վեհագոյն պատուով. վասն զի յարգոյ եւ պատուական ցուցանէ Ած զծառայս իւր առաջի

Իսկ Արտաշիր որդի Շապհոյ Պարսից արքային կալեալ զԽոսրով արքայ Հայոց, եւ եդեալ յԱնուշն բերդի, եւ փոխանակ նորա թագաւորեցուցանէ զՎռամշապուհ եղբայր նորա։ Բայց մեծին Սահակայ երթեալ առ Արտաշիր Պարսից արքայ, մեծարի առ ի նմանէ յաւէտ պատուով։ Վասն զի արգոյ եւ պատուական ցուցանէ Աստուած

անհաւատից. եւ ապա աչալուրջ երեւօք զլոլորն նորա կատարէր զհայցուածս

զծառայս իւր առաջի անհաւատից, եւ ապա աչալուրջ երեւօք զլոլոր նորա կատարէ զհայցուածս

Սխալ չըլլար ըսել թէ սոյն անանուն պատմութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ Յովհաննէս Կաթողիկոսի ԺԴ. գլուխը՝ լայնցած եւ ընդարձակուած. Այսպիսի ակնյայտնի երեւոյթի մը առջեւ հարցում կը ծագի թէ ո՛վ է արդեօք փոխ առնողը. Յովհաննէ՞ս թէ Անանունը։ Տարօրինակ պիտի ըլլար ընդունիլ թէ վարքի անանուն հեղինակը թողլով ազգին մէջ շատ աւելի յայտնի եւ անուն ունեցող հեղինակները (ինչպէս Կորիւն, մանաւանդ Խորենացի, զոր կը ճանչնայ), երթայ եւ գտնէ այնպիսի ժամանագրի մը, որ ընդ ամէնը երկու-երեք երես բան է խօսած Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի վրայ՝ անցողաբար։ Բայց ընդհակառակը զարմանալի բան մը չըլլար, եթէ ըսենք թէ Յովհաննէս Կաթողիկոս ձեռքի տակ ունենալով սոյն աշխատութիւնը, համառօտած եւ անոր վրայէն կազմած է իր ԺԴ. գլուխը։ Այն տարակուսութիւնը որ ըրինք նախորդ պարագային, կրնայ ըլլալ նաեւ այս պարագային, թէ արդեօք ինչո՞ւ Յովհ. Կաթողիկոս մոռնալով Խորենացին, դիմած է այսպիսի աղբիւրի մը։ Բայց ասոր պատասխանն այն պիտի ըլլայ որ գրուածքս ըլլալով ամփոփ եւ կանոնաւոր կենսագրութիւն մը սրբոց վարքին, մինչդեռ Խորենացին աւելի ընդարձակ եւ քաղաքական այլեւայլ դէպքերով միշտ ընդհատուած, բնականաբար առաջինն աւելի յարմար պիտի դատուէր այնպիսի համառօտախօս հեղինակի մը համար, ինչպէս է Յովհան Կաթողիկոս։

Այսպէսով կրնանք իբր հաստատ ընդունիլ թէ յիշեալ ԺԴ. գլխուն մէջ Յովհ. Կաթողիկոսի աղբիւրը անանունն է. եւ բոլոր այն նմանութիւնները որ Յովհան ունի Խորենացւոյն հետ այս գլխուն մէջ, առնուած են ո՛չ թէ Խորենացիէն, այլ անանուն վարքագրէն։ Ահաւասիկ փոքրիկ համեմատութիւն մը երեքին.

Խոր. ԿԳ.

Այլ նա ասէ. ինձ քաւ լիցի մատանել գայլոց զիմ մոլորեալ ոչխարս. եւ ոչ պատել զբեկեալն կամ զհիւանդացեալն, այլ զանավէժ առնել: Զի թէ էր հաւատացեալ թագաւորի առաջի, փութայի եւ ոչ յապաղէի, յուսալով զկանգնումն զլորելոյն՝ այլ հեթանոսաց՝ յաւելուլ կործանումն. ոչ առնում յանձն, ըստ այնմ՝ թէ մի՛ մատնեք զազանաց զանձն խոստովանող քեզ: Բանգի դրոշմեալ է աւազանաւն. թէպէտ եւ անառակ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. զինացեալ է մարմնով, այլ ոչ անհաւատ հոգւով. զեղխ է վարուք, այլ ոչ կրակապաշտ. ակար է ի կանոնս, այլ ոչ ծառայէ տարերց: Եւ զի՞արդ լինիցի այդ. փոխանակել զիմ ախտացեալ ոչխար ընդ առողջ գազանի. որոյ առողջութիւնն է մեզ պատուհաս:

Վարք. էջ 31

Քաւ, ասէ, լիցի ինձ
զայլոց զինն մատնե(ա)լ մոլորեալ ոչխար.

զի թէ

անառակ է, սակայն սուրբ մկըրտութեն դրոշմեալ է. պոռնիկ է. այլ քրիստոնեայ է. զինչացեալ մարմնով՝ այլ ոչ անհաւատ հոգւով. զեղխ վարուք՝ այլ ոչ կրակապաշտ:

Եւ այսպէս
զախտացեալ իւր ոչխարն ոչ փոխանակէր ընդ առողջ գազանին:

Ցուկ. էջ 73

Քաւ, ասէ լիցի ինձ
զայլոյ զիմս մատնեալ մոլորեալ ոչխար.

զի թէ

անառակ է, սակայն սուրբ մկըրտութեն դրոշմեալ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. զինացեալ մարմնով. այլ ոչ անհաւատ հոգւով. զեղխ է վարուք՝ այլ ոչ կրակապաշտ:

Եւ այսպէս
զախտացեալ իւր ոչխարն ոչ փոխանակէր ընդ առողջ գազանի:

*Այս տեսութեամբ պէտք է որ Անանունին վարքը գրուած ըլլայ մօտաւորապէս 850 թուականէն աւելի առաջ. այս թուականին կը յարմարի նաեւ Անանունին բազմակրկնող լեզուն, նման Նարեկացւոյն եւ ուրիշներու գրութեան, որոնց մէջ կը տեսնուի արաբական ոճին ազդեցութիւնը։ Այսպէս կը գրուատէ Անանուն (էջ 24) մեր սուրբ Թարգմանիչները. «Այսպիսի՞ս թերեւս քաղցրաբանէին երանելի առաջնորդքն մեր, այսպիսի՞ ձայնս արձակէին վաճառականքն. ամենառատաք, այսպիսի՞ թելադիր լինէին քարոզքն ճշմարտութեան, մշակքն հոգեւորք, գործօնեայք գեղեցիկք, բեռնաբերքն շահաւէտք, հարսնածուքն երանելիք, փեսաւէրքն փառաւորք, առ թօղքն արիական, կուսատածքն պատուականք» եւն եւն եւն, ընդ ամէնը 39 վերադիր. եւ յետոյ բազմաթիւ հակադրութիւններ, փոխաբերութիւններ եւն։*

## Է. ԹՈՒՂԹՔ Ս. ՍԱՀԱԿԱՅ

*Ս. Սահակի Թուղթերուն մասին ընդարձակ խօսած ենք Ս. Մեսրոպի կենսագրութեան մէջ, Գլուխ ԺԲ. ուստի հոն կ'ուղարկենք ընթերցողը լիակատար տեղեկութեանց համար։*

## Ը. ԵԶՆԻԿ ԵՐԷՑ

*Է. Դարու փոքր հեղինակներէն է. ներկայ եղաւ Հռիփսիմեանց մասունքներու բացման հանդէսին եւ այս առթիւ ոգեւորուած գրեց Հռիփսիմեանց պատմութիւնը, համառօտ կերպով խօսելով նաեւ թարգմանիչներու մասին։ Այս աշխատութիւնը դեռ անտիպ է։*

## Թ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ
(*տպ. Երուսաղէմ*, 1867)

*Թէեւ նշանակուած է իբրեւ Թ. դարու հեղինակ, բայց իր վախճանը տեղի է ունեցած 925 թուականին. իր թողած պատմութիւնը կը հասնի մինչեւ 923—4 թուականը։ Հին ժամանակի դէպքերուն վրայ կը խօսի շատ համառօտ կերպով, ուստի բնական է որ շատ բան չսպասենք իրմէ Ս. Մեսրոպի եւ գրերու գիւտի մասին։ Ս. Մեսրոպի վրայ Յովհան. Գլուխ ԺԶ. էջ 69, այսպէս կ'սկսի. «բայց յետ մահուան Արշակայ Մեսրովբ որ ի Հացեկաց Տարօնոյ եւ աշակերտեալ մեծին Ներսէսի. եւ էր քարտուղար ի դրան արքունի, ընկեցեալ ի բաց զպատիւ մարդկային՝ զհետ գնայր երկնաւորին, զվարս միայնակեցութեան առացեալ. բայց զառաջադիմութիւն վարուց նորա եւ զսքանչելիսն զոր նովաւ Աստուած ցուցանէր՝ բանական ցուցցի քեզ յայտնեանէ որ նախ քան զմեզ պատմեցին։*

Սակայն ինչպէս վերը ցոյց տուինք, Յովհան ամենեւին նկատողութեան չէ առած այդ պատմագիրները, եւ միայն հետեւած է Ս. Սահակի անանուն վարքագրին, որուն համառօտութիւնը կը ներկայացնէ իր ԺԴ. գլուխը «Յաղագս հայրապետութեան մեծին Սահակայ, եւ տարածման գրոց դպրութեան յազգս մեր, եւ բարձման թագաւորութեան մերոյ» (էջ 71—76)։ Այս գլխէն դուրս ուրիշ տեղ ուրիշ տեղեկութիւն չկայ։

## 10. ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

(տպ. Պետերբուրգ. 1887)

Կրնայ ըսուիլ թէ մեր պատմագիրներուն մէջ ամէնէն կուսակցականը Թովմա Արծրունին է. նա պատմական դէպքերը կը պատմէ այն չափով միայն, որչափով որ յարաբերութիւն ունին Արծրունեաց ցեղին հետ. եւ որովհետեւ Գրերու գիւտին մէջ Արծրունիները մասնակցութիւն ունեցած չեն, ուստի իսպառ կը լռէ այս մասին խօսելէ։ Ս. Սահակի կաթուղիկոսութեան վրայ կը խօսի Գլ. ԺԱ. էջ 69—75, բայց շատ անցողակի կը յիշէ Ս. Մեսրոպը։ Անհաւատալի ինչ որ գիտէ այս մեծ անձին մասին։

Էջ 72.— Եւ թագաւորեալ Վռամ որդի Յազկերտի՝ կոչէ ի դուռն զսուրբն Սահակ Հայոց Կաթողիկոս։ Որոյ առեալ զթոռունս իւր զՀմայեակ եւ Համազասպեան գնան առ արքայ ի Տսպոն. Քանզի Վարդան անցեալ գնացեալ էր սուրբ վարդապետաւն Մաշտոցիւ առ կայսր Թէոդոսս եւ առ Ատտիկոս արքեպիսկոպոս հանդերձ թղթովք սրբոյն Սահակայ, տանելով ընդ իւրեանց եւ զգիր եւ զբառ հայերէն դպրութեան. զոր ընկալեալ սուրբ հայրապետին եւ բարեպաշտ թագաւորին Թէոդոսի հինգ թղթովք եւ հինգ պատասխանեօք՝ կարգէ զսուրբ վարդապետն ընդ վարդապետութեան աթոռակալութեան սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի եւ քաջաց եւ գլխաւոր վարդապետացն, իսկ զՎարդան կարգէ ստրատելատ Հայոց։

Էջ 73.— (Նախարարները կը չարախօսեն Վռամին Ս. Սահակի մասին, այլ եւ այլ փաստեր մէջ բերելով)։ Նա եւ հաւատարմութիւն իւրեանց առեալ զթուղթսն սրբոյն Սահակայ առ կայսրն եւ առ հայրապետն, եւ զերթալն Մեսրովպայ եւ Վարդանայ ի Յոյնս առաջի արկանէին, եւ զգնալն Անատողեայ եւ զշինել քաղաքին ի Կարին գաւառ։

Էջ 74.— (Ազան Արծրունի կրօնաւոր դարձաւ) եւ երթեալ բնակէր առանձնապէս ի Գողթն գաւառի ի տեղւոջ վարդապետութեան սրբոյն Մեսրովպայ, ճգնաւէր հրեշտակակրօն վարուք, երանելի մարդկան եւ ահարկու դիւաց։

Էջ 75. — Ի նմին ամի յետ վեց ամսոյ անցանելոյ փոխի եւ սուրբ հայրապետն Մաշտոց. եւ խաչանշան լուսով խաղացուցանեն բազմութեամբ նախարարացն Հայոց ի ձեռն Վահանայ Ամատունւոյ, որ էր ի ժամանակին սպարապետ Հայոց. եւ տարեալ հանգուցանեն զնա ի Օշական գեօղ, ի գաւառին որ կոչի Ոստն Արագածոյ.

## 11. ՄԵՍՐՈՎԲ ԵՐԷՑ

(տպ. Վենետիկ, 1853)

Հեղինակիս աշխատութիւնը կը կոչուի «Պատմութիւն Սրբոյն Ներսիսի Պարթեւի Հայոց Հայրապետի». հեղինակին իսկ վկայութեամբ (տես էջ 138) գրուած է Հայոց ՆԺԶ (=967) թուականին. բայց ո՛չ թէ ինքնագիր աշխատութիւն է, այլ «ծաղկաքաղ արարի զգիրքս զայս ի Հայոց մնացորդաց յԱրեւելից գրոց»։ Բացի Արեւելից գրքէն, որ կորսուած է, մեծ օգնութիւն առած է հեղինակին նաեւ Փաւստոս, որուն ամբողջ գրուածքը կ'ամփոփէ իւր աշխատութեան մէջ։

Գրուածքիս մէջ Ս. Մեսրոպի աշակերտական շրջանին վրայ կայ փոքրիկ տեղեկութիւն մը (էջ 83), որուն վրայ հրատարակիչները տուած են ընդարձակ ծանօթութիւն մը (էջ 137)։ Փոքր տեղեկութիւն մ'ալ էջ 110, ուր Մեսրոպ ներկայ կը ցուցուի Ս. Ներսէսի մահուան։ Թէ՛ այս ծանօթութեան եւ թէ Զարբհանալեանի մէջ (էջ 543-4) չօշափուած խնդիրները մօտէն վերաբերելով Ս. Մեսրոպին, ընդարձակօրէն պիտի խօսինք Ս. Մեսրոպի կենսագրութեան մէջ։

## 12. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԱՍՈՂԻԿ

(տպ. Պետերբուրգ, 1885)

Ստեփաննոս Ասողիկ՝ պատմիչ Ժ. դարու, իր պատմութեան մէջ թէեւ անցողակի կը խօսի Գրերու գիւտին վրայ, բայց կուտայ մեզ մէկ-երկու կարեւոր տեղեկութիւններ, որոնց վաւերականութեան վրայ կը խօսինք իր տեղը։ Իր գլխաւոր աղբիւրներն են եղած Կորիւն եւ Ղազար, բայց անշուշտ նաեւ Խորենացին, թէեւ սորա անունը չի յիշեր գրերու գիւտին պատմութեան ժամանակ։

Ասողիկի տուած բոլոր տեղեկութիւնները կը գտնուին Երկրորդ դպրութեան մէջ. ամէնէն գլխաւորն է Գլուխ Ա. էջ 74—77. քանի մը ուրիշ տեղեկութիւններ կը պարունակեն Գլ. Բ. (էջ 78), Գլ. Զ. (էջ 139), Գլ. Ը. (էջ 182) եւ վերջապէս Գլուխ ԻԱ. (էջ 205)։

## 13. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ

Կիրակոս Գանձակեցին իւր պատմութեան մէջ (էջ 64) սոյն հեղի-

նակիս համար կ'աւանդէ թէ «Սա գրեաց ճառս ներբողականս ի մեծազօր արքայն Հայոց Տրդատ, եւ ի սբ. հայրապետն Ներսէս, եւ ի սքանչելին Սահակ եւ Մեսրոպ»։ Դժբախտաբար այս խիստ փափաքելի աշխատութիւնն ալ այժմ կորսուած է։

## 14. ԱՆԱՆՈՒՆ ՊԱՏՄ. Ս. ՆԵՐՍԷՍԻ
(տպ. Վենետիկ. 1853)

Այս աշխատութեան ընդարձակ խորագիրն է «Ցաղագս հայրապետութեան սրբոյն Ներսիսի եւ հաստատելոյ զաթոռ պատրիարգութեան որպէս այլոց պատրիարգաց». կը բռնէ Սոփերքի Է. հատորին 5—30 էջերը։ Գրուածքը, ինչպէս էջ 30 կ'երեւայ, Ս. Ներսէսի տօնին առթիւ խօսուած ճառ մըն է, որուն ո՛չ հեղինակն է յայտնի եւ ոչ գրութեան թուականը. անշուշտ յետին գործ մըն է, որովհետեւ օգտուած է Խորենացիէն եւ Ցովհաննէս Կաթողիկոսէն։ Էջ 26, ակնարկելով Ս. Ներսէսի գուշակութիւնները. կ'ըսուի թէ «Սա եւս բազում բանս խօսեցաւ առ ի յօգուտ լսողաց վասն ազգին Նետողաց. եւ վասն որդւոյն կորստեան եւ վասն միւսանգամ գալստեանն, որ կայ ի կատարեալ պատմութեան նորուն»։ Թէ հոս եւ թէ վերը էջ 24, Նետողաց ազգին յիշատակութիւնը բաւական է ցուցնելու թէ աշխատութիւնը 1021 թուականէն յետոյ է գրուած, որուն կը համաձայնի նաեւ Մեսրոբ երէցի թուականը (967), եթէ «կատարեալ պատմութիւն» բառերով Մեսրոբ երէցի պատմութիւնը հասկնանք։ Էջ 27 կ'ըսուի թէ Ս. Ներսէսի գերեզմանն անյայտացած է. «եւ անյայտացաւ գերեզմանն ի բազում ամաց անցելոց ի վերայ. թերեւս զգուշացեալ ի զաւողաց եւ կացեալ Մնացեալ ի պահեստի մինչեւ ի դէպ ժամանակի յայտնելոյ ի հրամանէ Աստուծոյ կարգելոյ»։ Ասկէ կը հետեւի թէ գրուածքին ժամանակը պէտք է դնել 1275 թուականէն առաջ, որովհետեւ այս թուին եղաւ Ս. Ներսէսի նշխարներուն յայտնութիւնը, ըստ «Պատմութիւն յայտնութեան նշխարաց սրբոյն Ներսիսի» ի (Սոփերք, հատ. Է. էջ 44)։ Ըստ այսմ աշխատութեանս ժամանակը ԺԱ-ԺԳ դարուց մէջ կ'իյնայ։

Ս. Մեսրոբի վրայ այս աշխատութեան մէջ կը խօսուի էջ 28, փոքրիկ հատուածով մը, բայց առանձին նորութիւն չի պարունակեր։

## 15. Ս. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ
Վիպասանութիւն
(տպ. Վենետիկ, 1830)

Շնորհալւոյն աշակերտական ժամանակին գործերէն է «Վիպասանութիւն» անունով գրուածքը, որ ոտանաւոր Հայոց պատմութիւն է՝ շատ համառօտ։ Գրուածքիս մէջ 897երորդ տողէն կ'սկսի խօսուիլ Ս. Մես-

րոքի եւ գրերու գիւտին վրայ, եւ այսպիսի աշխատութենէ մը պահանջուած փոքրիկ սահմանէն ալ շատ անդին անցնելով՝ կ'երթայ մինչեւ 945 տողը։ Այնուհետեւ կը պատմուի Արտաշիրի Թագաւորութիւնը. Արշակունեաց կործանումը եւ Ս. Սահակի մահը։ Զարմանալի է որ հեղինակը Ս. Մեսրոպը եւ գրերու գիւտը Արշակի եւ Վաղարշակի Թագաւորութեան ժամանակ կը դնէ. նոյնպէս նախապատիւ տեղը կու տայ Ս. Մեսրոպին, եւ անոր պատմութիւնը վերջացնելէ ետք միայն կ'անցնի Ս. Սահակին։ Վենետիկի տպագրութեան մէջ մեզ հետաքրքրող մասը կը բռնէ 533—5 էջերը։

## 16. Ն. ՇՆՈՐՀԱԼՒՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔԻ

Շնորհալւոյն յիշեալ աշխատութիւնը դեռ տպագրուած չէ. մենք գործածած ենք Ս. Էջմիածնի ձեռագրատան Կարինեան թիւ 1466 ձեռագիրը. այս աշխատութեան յառաջաբանին սկիզբը կայ երկու էջ տեղեկութիւն թարգմանիչներուն վրայ, բայց ամբողջովին լինելով հետեւողութիւն Խորենացւոյն, նոր բան մը չի պարունակեր։

## 17. ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ

(տպ. Վաղարշապատ, 1893)

Սոյն հեղինակի ժամանակագրութեան մէջ էջ 68 կան մի քանի համառօտ տեղեկութիւններ, որոնք իբր թէ կ'որոշեն ինչ ինչ թուականներ. այս տողերն ամբողջովին մէջ բերուած լինելով Ս. Մեսրոպի կենսագրութեան մէջ, Գլուխ ԺՁ. աւելորդ կը համարենք աւելի երկար խօսիլ այս մասին։

## 18. ԿԱՐԱՊԵՏ ԵՊ. ՍԱՍՆԱՑԻ

(տպ. Վաղարշապատ, 1897)

Կարապետ եպ. Սասնացի մեր մատենագրութեան մէջ շատ յայտնի անձնաւորութիւն մը չէ. Զարբհանալեան, էջ 758, կը յիշէ զայն «Մանր մատենագիրք» Յաւելուածին մէջ. իր միակ աշխատութիւնն է «Ներբողեան պատմագրաբար ասացեալ սրբազան եպիսկոպոսի եւ վարդապետի՝ Տէր Կարապետի Սասանցւոյ ի խնդրոյ համազգեայ եղբօր ճգնաւորի՝ յաղագս վարուց եւ մահուան սուրբ եւ երջանիկ վարդապետին Մեսրոպայ Թարգմանչի եւ լուսաւորչին»։ Այս աշխատութիւնը հասած է մեզի Ս. Էջմիածնի մատենադարանի թիւ 1366 (= Կարինեան 1330) ձեռագրով, որմէ հրատարակեց Մեսրոպ վրդ. Տէր Մովսէսեան, կարճ յառաջաբանով մը եւ ծանօթութիւններով. անոր մատենախօսականը տես ՀԱ. 1898, էջ 153։

Ըստ յառաջաբանին (էջ 9) հեղինակին ապրած ժամանակը եւ ճառին գրութեան թուականը յայտնի չէ. բայց նորա լեզուն մեզ միջոց է տալիս կանգ առնելու ԺԲ. ԺԳրդ դարերի վրայ. աւելի հին դժուար թէ գրուած լինի, իսկ վերջի սահմանը ձեռագրի գրչութեան թուականն է 1265—1272»։

## 19. ՎԱՐԴԱՆ ՊԱՏՄԻՉ
(տպ. Վենետիկ, 1862).

ԺԳ. դարու պատմիչ է Վարդան. իւր պատմութիւնը արդէն գրած վերջացուցած էր 1265 թուականին, ըստ Զարբհանալեանի, էջ 719։ Ինքը թէեւ համառօտաբան, բայց բաւական տեղ կուտայ Գրերու գիւտի պատմութեան, որուն մասին կը դնէ նաեւ մէկ երկու նոր տեղեկութիւն. ասոնց արժէքին վրայ պիտի խօսինք «Հայոց Գիրերը»ին մէջ, Գլուխ Դ եւ Ջ։ Մեզ հետաքրքրող մասը կը բռնէ ԻԵ. ԻԶ. ԻԷ գլուխները, էջ 49—54։

## 20. ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ
(տպ. Վենետիկ, 1865)

Ըստ Յառաջաբանին (էջ Բ.), զոր հրատարակիչները դրած են Կիրակոսի պատմութեան սկիզբը, պատմիչս ծնած է 1200 թուին (մօտաւորապէս) եւ վախճանած 1272-ին։ Իւր պատմութիւնը կը հասցնէ մինչեւ 1265 թուականը. առատ տեղեկութիւններ կուտայ Հայոց, Թաթարաց եւ Աղուանից մասին. Գրերու գիւտին եւ Ե. դարու գրական շարժման վրայ կուտայ շատ այլ ընդ այլոյ տեղեկութիւններ, գլխաւորապէս էջ 14—20. բայց վերջն ալ (էջ 97, 98, 134) երեք տեղ առիթ կ'ունենայ յիշելու Ս. Մեսրոպը, իսկ էջ 45 կը խօսի Մաշտոց կաթողիկոսի եւ իւր Մաշտոց գրքին վրայ։

## 21. ՍՏԵՓԱՆՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ
(տպ. Մոսկվա, 1861)

ԺԳ. դարու հեղինակ է. իւր Սիւնեաց Պատմութիւնը գրելու համար իբր աղբիւր է գործածած՝ բացի հին պատմագիրներէն, նաեւ բազմաթիւ պաշտօնական թղթեր, որ գտած է Սիւնեաց վանքերուն մէջ. գործածած պատմագիրներուն մէջ յատկապէս յիշելու արժանի է «Պետրոս եպ. Սիւնեաց, աշակերտ Մովսէս Քերթողահօր», որուն պատմութիւնը կորսուած է։ Գրերու գիւտին, Ս. Մեսրոպի քարոզութեան եւ Աղուանից լուսաւորութեան վրայ կը խօսի էջ 37—39, Գլուխ ԺԳ. վասն գալոյ սուրբ վարդապետին Մեսրովբայ ի Սիւնիս եւ ի Գողթն եւ շրջելոյ ընդ

գաւառոն եւ զդօղեալ կռապաշտութիւնն ի տեղիս տեղիս սրբել օգնութեամբ Վաղինակայ իշխանին եւ Տաբիթայի. — Գլուխ ԺԱ. վասն Նորոգ եպիսկոպոսութեան Սիւնեաց տեառն Անանիայի, եւ երթն յԱղուանս. եւ պատուել ի Թագաւորէ նոցունց։ Վերջին գլխոյս տրուած ինչ ինչ տեղեկութիւնները, որոնք այլուր անծանօթ են, քաղած է Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսին Պատմութենէն։

## 22. ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ
(տպ. Մոսկվա, 1860)

Այս պատմագրին ժամանակագրութեան մէջ (էջ 47) Ս. Մեսրոբի մասին կայ միայն հետեւեալ երկտողը. «Ամք տեառն 423, սկիզբն դպրութեանց հայ գրոցս ի ձեռն սրբոյն Սահակայ եւ Մեսրովպայ, որք վաթսուն աշակերտօք աշխատեալք թարգմանեցին զամենայն հին եւ նոր կտակարանս։ Կատարեցան աշակերտքն Մաշտոցի յԱստղաբլուրն»։

## 23. ՍԻՄԷՕՆ ԱՊԱՐԱՆՑԻ
(տպ. Վաղարշապատ, 1870)

ԺԶ. դարուն Սիմէօն վրդ. Ապարանցի Փարպեցւոյն Պատմութիւնը ոտանաւորի վերածելով անունը դրաւ «Վիպասանութիւն սակս Պահլաւունեաց զարմի եւ Մամիկոնեանց սեռի»։ Այս վիպասանութեան մէջ երեք տուն ալ նուիրուած է Ս. Մեսրոպի յիշատակին՝ հետեւեալ ձեւով. — (էջ 35)։

1. Այլ երկնաւոր Հայրըն հաճեալ,
Զիմանալին մեզ Թագ կազմեալ,
Զպիրն ի վերուստ սրբոյն շնորհեալ,
Որով Մեսրոպ մըխիթարեալ։

2. Հանուրց հիւսիս պայծառ ծաղկեալ,
Երից սեռից լուսաւորեալ,
Թէոդոսի փոքուն լուեալ,
Բարեպաշտին ուրախացեալ։

3. Ուսանելոյ հրաման հանեալ,
Սուրբըն Մեսրոպ յոյժ մեծարեալ,
Եւ զԱնատօլ ուղեւորեալ,
Ըզ Թըւուլուս քաղաք շինեալ։

Յաջորդ գլուխները կը պատմեն Թէոդուպօլիս քաղաքին մասին, որու շինութեան գործակալ է Մովսէս Քերթող. Մովսէս եւ Դաւիթ կ'եր-

թան Յունաստան, վէճ Յունաց հետ, յաղթութիւնը եւն։

Այս տեղեկութիւնները մեզ բերինք ամբողջութեան համար։

## 24. ԱՌԱՔԵԼ ԴԱՒՐԻԺԵՑԻ
(տպ. Վաղարշապատ, 1884)

Այս պատմագիրը իր ժամանակակից գրեթէ ամէն խնդրի վրայ խօսած է բաւական մանրամասնութեամբ. Փիլիպպոս կաթուղիկոսի զանազան շինութեանց եւ նորոգութեանց վրայ խօսելու ժամանակ, էջ 270—271, կը պատմէ նաեւ Օշականի տաճարին եւ Ս. Մեսրոպի գերեզմանին վերանորոգութիւնը։ Միւս պատմագիրներէն, Սիմէոն կաթողիկոս (Ջամբռ, Վաղարշապատ 1873) եւ Զաքարիա Սարկաւագ (Պատմագրութիւն, Վղրշպտ 1870) թէեւ կը խօսին Փիլիպպոս կաթուղիկոսի ուրիշ շինութեանց վրայ, բայց այս նորոգութեան մասին լուռ են։

## 25. ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Յայսմաւուրքի մէջ Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի մասին խօսուած է չորս անգամ բաւական ընդարձակ կերպով. 1. Նաւասարդ Լ եւ սեպտեմբեր Թ. յիշատակ վարուց եւ մահուան սուրբ հայրապետին մերոյ Իսահակայ Պարթեւին։ 2. Հոռի Ը եւ սեպտեմբեր ԺԷ. յիշատակ սրբոց թարգմանչացն Սահակայ եւ Մեսրոպայ եւ աշակերտաց նոցա. 3. Տրէ ԺԷ եւ նոյեմբեր ԻԵ. Գիւտ գրոյն Հայոց ի Բալու. 4. Մեհեկի ԺԳ եւ փետրուար ԺԹ. վարք եւ յիշատակ սուրբ հօրն մերոյ Մեսրոպ վարդապետին։ Այս չորսէն զատ «Սահմի Դ եւ հոկտեմբեր ԺԳ, Վարք եւ յիշատակ սուրբ հայրապետին մերոյ Մաշտոց վարդապետին» գլխով կը խօսի Մաշտոց կաթուղիկոսի եւ իւր Մաշտոց գրքին վրայ, եւ կուտայ մեզ շատ պիտանի տեղեկութիւններ։

## 26. ՇԱՐԱԿԱՆ

Իբրեւ վերջին աղբիւր Ս. Մեսրոպի համար կրնանք յիշել Շարականի, Գանձարանի եւ Տաղարանի մէջ գտնուած այլեւայլ երգերը, տաղերը, կամ բանաստեղծական ուրիշ գրութիւնները, որոնք միայն փառաբանութիւններ եւ գովասանական ճառեր պարունակելով, պատմական նոր տեղեկութիւն մը չեն տար մեզ։

## 27. ԱՅԼԵՒԱՅԼՔ

Այս բաժնին տակ կը զետեղենք վերջապէս զանազան մանր գրու-

թիւններ, որոնք Ս. Մեսրոբի Կենսագրութեան եւ Հայոց Գիրու մէջ յիշուած են տեղ տեղ. բայց հոս անոնց իւրաքանչիւրին վրայ առանձին խօսիլ աւելորդ կը համարենք։ Այս դրութիւններն են՝ 1. Ոսկեփորիկէն հատուած մը, որ հանած ենք Էջմիածնի ձեռագրատան Գէորգեան թիւ 263 ձեռագրէն (տես էջ 255), որուն հետ ճշտիւ նոյն է Կարինեան թիւ 1723 ձեռագիրը, էջ 275։

2. Պատմութիւն տեսլեան Ս. Սահակայ, հանուած նոյն ձեռագրատան Կարինեան թիւ 1757 ձեռագրէն (տես էջ 28բ). կը պարունակէ փոքրիկ տեղեկութիւն մը Մաշթոցի տեղապահութեան մասին։

3. Վարդանագիրք, զոր կը յիշատակեն Հ. Բ. Սարգիսեան եւ Հ. Ս. Վ. Պալոնեան. առաջինը «Տառադարձութեան խնդրին վրայ» յօդուածին մէջ. Բազմ. 1889, էջ 29. եւ երկրորդը Երկրագունտ, 1885, էջ 106 ծանօթ։ Վարդանագիրքը հասած է մեզ Վենետիկի թիւ 729 ձեռագրով։

4. Ժամանակագրութիւն Աւետիքայ, գրեալ ՌՄԼԷ թուին, պահուած միայն Ս. Էջմիածնի Կարինեան թիւ 1741 ձեռագրով։

5. Վարք Անտոնի միայնակեցի, որուն յիշատակարանը կուտայ Ս. Մեսրոբի մահուան թուականը, ըստ Նորայրի, Կորիւն Թրգմ. էջ 28 եւ Հ. Գ. Զարբհանալեան, Մտնգր. 286։

6. Գիրք Թղթոց, էջ 220, Յովհաննու իմաստասիրի Հայոց կաթուղիկոսի սակս ժողովոց, որ եղին ի Հայս. ի մէջ այլոց կը խօսի Աշտիշատի ժողովին վրայ շատ համառօտ կերպով։



## ԳԼՈՒԽ Բ.

### Նոր աղբիւրներ.

Նոր աղբիւրներ կը կոչենք բոլոր այն աշխատութիւնները (ազգային կամ օտար), որոնք գրուած են ԺԹ. դարէն ասդին, մանաւանդ նորագոյն ժամանակներուն եւ որոնց իբր հիմ ծառայած են հին աղբիւրները։

Նոր աղբիւրներն ալ երկու տեսակ են. պատմական կամ քննական։ Պատմական գրուածքները լոկ նկարագրական բնաւորութիւն ունին, քաղուած են հին պատմագիրներու վրայէն եւ մեզ համար չունին առանձին կարեւորութիւն։ Քննական գրուածքները հիմնուած են բանասէրներու այլեւայլ խուզարկութեանց վրայ, երբեմն կը հանեն այնպիսի խնդիրներ, որոնց մասին հին աղբիւրները ոչինչ կամ գրեթէ ոչինչ կուտան, ուստի եւ մեզ համար շատ մեծ նշանակութիւն ունին։

Կան գրուածներ, որոնք միմիայն պատմական են. կան ալ որ միայն քննական են. բայց աւելի շատ են այն աշխատութիւնները, որոնք թէ՛ պատմական եւ թէ քննական մասեր կը բովանդակեն։ Զուտ պատմական գրուածներ կը գտնենք բոլոր Ազգային պատմութեանց, Հայ մատենագրութեան պատմութեանց, Հայ եկեղեցական, ինչպէս եւ ընդհանուր եկեղեցական պատմութեանց. Վարք սրբոցներու եւ կենսագրական հաւաքածոներու մէջ. ասոնցմէ դուրս կան նաեւ մի քանի մենագրական տետրակներ։

Աւելորդ եւ աննպաստ է մի առ մի յիշել Ազգային պատմութիւնները. բաւականանանք միայն նշանակելով՝

1. Չամչեան Հայոց պատմութիւնը, Վենետիկ, 1784, որ ասոնց մէջ ամէնէն ընդարձակն ըլլալով, ամէնէն աւելի մանրամասնօրէն կը խօսի մեր նիւթին վրայ, Հատ. Ա. էջ 483—535. իսկ նոյն էջ 748—777 ծանօթութեանց մէջ ունի շատ բան, որ քննական նշանակութիւն ունին։

2. Տիեզերական պատմութիւն Հ. Յ. Գաթըրճեանի, Վիէննա, 1852, կը խօսի նաեւ Հայոց մասին. Ս. Մեսրոպի վրայ հատ. Բ. էջ 521—525։

3. Մակար եպս. Բարխուդարեանցի Պատմութիւն Աղուանիցը (տպ. Վաղարշապատ 1902) կը պատմէ միայն Ս. Մեսրոպի գործունէութիւնը Աղուանից երկրին մէջ, մանաւորապէս էջ 67—73, գրեթէ բոլոր համառօտուած Կաղանկայտուացիէն։

*Մատենագրական պատմութեանց մէջ լոկ պատմական բնաւորութիւն ունին՝*

4. *Ներսէս վրդ. Դուրեանի հրատարակած հայ մատենագրութեան համառօտ պատմութիւնը. տպ. Պօլիս. իսկ Զարբհանալեան եւ Մալխասեան քննական մասեր եւս ունին։*

*Հայ եկեղեցական պատմութիւններն են՝*

5. *Եկեղեցական պատմ. Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ. յօրինեաց Մելքիսեդեկ վրդ. Մուրադեան, միաբան ս. Երուսաղէմի. Երուսաղէմ. ի տպարանի Սրբոց Յակոբեանց.* 1872։ *Ասոր մէջ Ս. Սահակի եւ Ս. Մեսրոբի եկեղեցական գործունէութեան վրայ կը խօսուի էջ* 75—101. *իսկ անոնց մատենագրական գործունէութեան վրայ էջ* 149—154. *յատկապէս էջ* 149—152՝ *Ս. Սահակի վրայ, եւ էջ* 152—154՝ *Ս. Մեսրոբի վրայ։*

6. *Հայաստանեայցս առաքելական ս. եկեղեցւոյ պատմ. աշխ. Յուսիկ վրդ. Մովսէսեան, Վղրշպտ.* 1884, *որուն մէջ էջ* 49—62 *կը խօսուի Ս. Սահակի եւ Ս. Մեսրոբի վրայ։*

7. *Եկեղեցական պատմ. (կարճ համառօտ). աշխատասիրութիւն Յ. քհ. Օրբելի. Զաքարիայ Գրիգորեանց Կովկասեան գրավաճառանոց ի Թիֆլիզ. (այս աշխատութիւնը ձեռքի տակ չեմ ունեցած).* 1856։

8. *Նոյնին ընդարձակն է Դասատետր եկեղ. պատմութեան. Յովսէփ աւ. քհ. Օրբելի. Թիֆլիս* 1871. *Ս. Սահակի եւ Ս. Մեսրոբի վրայ էջ* 73—81, 89—91, 93—95։

*Ընդհանուր եկեղեցական պատմութիւններ են.*

9. *Պատմ. Եկեղեցւոյ, Իգնատիոս վ. Փափազեանց, Վենետիկ* 1848. *Թէեւ ընդհ. եկեղեցական պատմութիւն է, բայց կը խօսի նաեւ հայ եկեղ. պատմութեան վրայ, էջ* 225—230 *Ս. Սահակի եւ Ս. Մեսրոբի գործունէութեան մասին է։*

10. *Եկեղեցական պատմ. հանդերձ ազգ. եկեղ. պատմութեամբ. բարձրագոյն դպրոցաց եւ վարժարանաց համար. գրեց Հ. Վարդան վրդ. Ըստկարեան, Վիէննա,* 1872. *այս աշխատութիւնն եւս ձեռքի տակ չեմ ունեցած։*

*Սրբոց վարքեր են.*

11. *Լիակատար Վարք Սրբոց. պատմ. վարուց սրբոց, զորս տօնէ Հայաստանեայց եկեղեցի.* 12 *հատոր. Հ. Մկրտիչ վ. Աւգերեան, Վենետիկ,* 1810—14. *(ծանօթութիւններով կամ առանց ծանօթութեան, երկու տարբեր տպագրութիւններ)։ Ս. Սահակի վրայ խօսուած է հատոր Բ. էջ* 131—162, *իսկ Ս. Մեսրոբի վրայ հատ. Ե. էջ* 281—308։

12. *Վարք սրբոց համառօտ աշխարհաբար, ծաղկաքաղ հաւաքեալ*

ի Հ. Ղուկաս Ինճիճեան. տպ. Վենետիկ, 1832, 1861 եւ 1896 Թուականներուն։ Չէ խօսած Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի մասին։

կենսագրական հաւաքածոներ են.

13. Ընտիր Հայկազունք, վարք եւ լուսանկար կենդանատիպք հայկազուն երեւելի անձանց. աշխ. տպ. Վենետիկ. 1873. սոր Բ. տպագրութիւնը պատրաստեց Հ. Յ. Թորոսեան, 1891. ուր էջ 147—162 կը խօսուի Ս. Սահակի եւ էջ 163—174 Ս. Մեսրոպի վրայ։ Նոյն հեղինակը պատրաստեց նաեւ երրորդ տպագրութիւն մը՝ գլխաւորապէս լեզուական փոքրիկ փոփոխութիւններով. այս տպագրութեան մէջ Ս. Մեսրոպի վրայ խօսուած մասը կը գրաւէ էջ 161—170։ Առաջին տպագրութիւնը Հ. Թորոսեանի գործը չէ, այլ բոլորովին տարբեր հեղինակի. հետեւաբար եւ պարունակութիւնն ալ տարբեր. այս տպագրութեան մէջ Ս. Մեսրոպի կենսագրութիւնը չկայ եւ առաջին անգամ Բ. տպագրութեան մէջ է դրուած։ Թէ երկրորդ եւ թէ երրորդ տպագրութիւնները ունին նաեւ Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի պատկերները։

14. Ցուցիկք հայրենեաց հայոց. Հ. Ղ. Մ. Ալիշան, Վենետիկ 1869—1870 (երկու հատոր). Հատ. Ա. էջ 311—352 կը խօսի Ս. Սահակի վրայ, միասին խառնելով եւ Ս. Մեսրոպը։

15. Նկարագիր վարուց երեւելի արանց. այբուբենի կարգով համառօտ պատմութիւն սուրբերու եւ քանի մը երեւելի անձերու. աշխարհաբար լեզուով, տղայոց համար. աշխատ. Հ. Մինաս վրդ. Բժշկեան. Վենետիկ 1850. Ս. Մեսրոպի վրայ կը խօսուի էջ 540—1, ամենահամառօտ կերպով։

16. Սրբազան Հայկազունք կամ դէմքեր ազգային սրբազան պատմութեան. Վենետիկ 1902։

Մասնաւոր փոքրիկ մենագրութիւններ են՝

17. Հայոց մեծ վարդապետ Ս. Մեսրոպը. աշխատասիրեց Արամ Մելեան (այժմ Մելեան քհ.) Թիֆլիս, 1883 (արտատպուած Երեւանի Պըռակ թերթէն)։

18. Մեսրոպ Մաշտոց. կազմեց Ե. Թոփչեան, Ալէքսանդրապօլ, 1901։

19. 1500 տարի առաջ. Հայոց տառերի գիւտը. գրեց Իսահակ Յարութիւնեանց, Տփխիս, 1904։

Ասոնցմէ զատ թերթերու, հանդէսներու, օրացոյցներու եւ զանազան հաւաքածոներու մէջ երեւցած են այլեւայլ փոքրիկ յօդուածներ, որոնք նոյնպէս պատմական բնաւորութիւն ունին միայն եւ գրուած են աւելի կրթական նպատակով. ասոնցմէ մաս մը երեւցաւ այս վերջին տարին, գրերու գիւտին 1500ամեակին առթիւ։

Չենք կրնար մի առ մի յիշել այս փոքրիկ յօդուածները, այլ կը բաւականանանք միայն նշանակելով երկու ամփոփ գրութիւններ։

20. Լոյս օրացոյց (համառօտ). 1904 Թուականի. խմբագրեց Ն. Թոփչեան, էջ 197—202՝ Ս. Սահակ եւ էջ 203—211՝ Ս. Մեսրոպ, երկուքն ալ պատկերով։

21. Լոյս օրացոյց (ընդարձակ). 1904 Թուականի, խմբագրեց Ն. Թոփչեան, էջ 415—421՝ Հայոց գրերի գիւտի դարադարձը. Ստ. Մալխասեանց (նախորդին պատկերներով)։

Այս բոլոր աշխատութիւնները՝ որ յիշեցինք, առ հասարակ իրարու կրկնութիւն են եւ իրարմէ տարբեր բաներ չեն պարունակեր. ընդհակառակը պատմա-քննական, մանաւանդ զուտ քննական աշխատութիւնները շատ աւելի բազմակողմանի եւ պարունակութեամբ ալ բազմազան են։ Ասոնց պարունակած այլեւայլ խնդիրներուն մանրամասն բացատրութիւնն ու քննութիւնը պահելով Ս. Մեսրոպի կենսագրութեան եւ Հայոց Գրերուն, հոս տանք այդ աշխատութեանց ըստ կարելւոյն լիակատար ցուցակը։

Հ. Ղ. Ինճիճեան, Հնախօսութիւն Հայաստանեայց. Վենետիկ, 1835. գրերու գիւտի մասին կը խօսի Հատ. Գ. էջ 69—87։

Էմին. — Объ армянскомъ алфабитѣ. Հրատարակուած է իբրեւ չորրորդ յաւելուած՝ Խորենացւոյ Թարգմանութեան հետ. սոյն աշխատութիւնը թարգմանուած է նաեւ ֆրանսերէն Evariste Prudhomme հայագէտին ձեռքով եւ տպագրուած Revue d'Orient-ի մէջ (1865), էջ 439—467 « De l'alphabet arménien ». իսկ հայերէն թարգմանութիւնը հրատարակեց Ս. Ստեփանէ «Հայկական այբուբեն» վերնագրով, Հայկական աշխարհ թերթին մէջ. 1870. փետր. էջ 42—46 (շարունակութիւնը չեմ տեսած)։

Fr. Müller. — Uber den Ursprung der armenischen Schrift, SWAW. 1864, XLVIII. Armeniaca I. էջ 431—9։

Պետերման. — Վասն հայկական գրոց. Սիօն ամսագիր, Երուսաղէմ. 1869, էջ 85—86 եւ Journal As. 1867, էջ 200։

Մ. Մխանսարեանց. — Կանոնաւոր եւ վայելուչ գրութեան պատմութիւնը ու տեսութիւնը. Ս. Պետերբուրգ 1872. մեծ մասը գրերու արուեստի կամ վայելչագրութեան պատմութիւնն է, կայ նաեւ հայոց գրերու գիւտին վրայ մասեր։

H. Hübschmann, Ueber Aussprache und Umschreibung des altarmenischen. ZDMG. 1876 (XXX). էջ 62—64.

V. Gardthausen. — Ueber den griechischen Ursprung der armenischen schrift, ZDMG. XXX. 1876, էջ 74—80.

Ս. Պալասանեան. — Հայոց մտաւոր շարժողութիւնը. Փորձ, Բ. տարի, գիրք III.

Գր. Խալաթեան. — Ղազար Փարպեցի եւ գործք նորին. Մոսկուա, 1883. յատկապէս էջ 66—73, եւ 117 կը հային տառերու գիւտին.

P. Vetter. — Ս. Մեսրոպ առաքեալ Հայոց. (տես Nirschl, Patrologie, III. Mainz 1893, էջ 239—241. հայ թրգմ. Հ. Յ. Տաշեանի «Հայկական աշխատասիրութիւնք Ֆէթթէրի», Վիեննա, 1895, էջ 64—78.)

Ս. Վ. Պարոնեան. — Հայ նշանագիրք. Երկրագունտ, 1884—5. էջ 245—252, 291—7, 347—257, 395—402, 491—8, 539—549, 1885 էջ 51—7, 99—109, 147—156, 202—210, 243—251, 295—301, 339—347, 387—392, 483—492, 551—559 (կիսատ մնացած).

Հ. Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Բ. տպ. Վենետիկ 1886. Հայկական նշանագիրք էջ 10—57, Հայ դպրագիրք էջ 57—84, Ս. Մեսրոպ՝ էջ 256—262.

» . — Հայկական թարգմանութիւնք նախնեաց, Վենետիկ, 1889, Ս. Գրքի թարգմանութեան եւ թարգմանչաց վրայ կը խօսի էջ 59—245.

Հ. Բ. Սարգսեան. — Տեսութիւն տառադարձութեան խնդրոյն եւ հայերէն նշանագրոց վերայ. Բազմ. 1889, էջ 21—42, 97—103, 129—134, 161—170.

Fr. Müller. — Zur Geschichte der armenischen Schrift, WZKM. 1888, էջ 245—248, Թրգմ. Հանդէս Ամս. 1889, էջ 86—87.

Հ. Բ. Սարգիսեան. — Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, Վենետիկ 1890. մեզ կը վերաբերին էջ 42-43, 288-297, եւ մանաւանդ էջ 359-408, որուն վրայ տես Ս. Մեսրոպի կենսագրութիւնը, Գլուխ ԺԱ. 7.

Մ. Գարագաշեան. — Պատմութիւն Հայ դպրութեան. — Գիր. Տաղիկ մանկանց Հանդէս, Պոլիս, 1891, էջ 204.

Fr. Müller. — Zur Geschichte der armenischen Schrift, WZKM, 1890, էջ 284-288. Թրգմ. Հանդ. Ամս. 1891, էջ 68-70.

Իսահակ Յարութիւնեանց. — Հայոց Գիրը, Թիֆլիս, 1892. 400 էջէ բաղկացած աշխատութիւն մըն է եւ մինչեւ այժմ հրատարակուած բոլոր աշխատութեանց մէջ ամէնէն ընդարձակը։ Բայց պէտք է հոս խոստովանիլ թէ շատ խակ աշխատութիւն է եւ հաւաքածոյ ամէն տեսակ պիտանի եւ անպիտան դիտելեաց. հոս կարելի է գտնել Հայոց լեզուի ծագումը, համեմատական քերականութիւն, ստուգաբանութիւններ, Ինճիճեանի հնախօսական կարծիքներուն քննադատութիւնը, Դարեհ Վըշ-

տասաղեան ա̀րձանագրութեանց այլ ընդ այլոյ ընթերցումը։ Մորթմանի բեւեռագրական քննութիւնները եւ անոնց հերքումը։ Նախապատմութիւն հայոց ըստ բեւեռագրաց։ Խորենացւոյ ծնած տեղին քննութիւնը։ Ձեռագիրներուն նկարագրութիւնը։ Թուականի հետախուզութիւններ, զանազան թարգմանութեանց սխալները, եւ վերջապէս ամէն ինչ, մինչեւ իսկ Այվազովսկիի նկարներու վրայ (էջ 100)։ Գրքին արժէքը ցոյց տալու համար բաւական է ըսել թէ պսակուած է Սահակ-Մեսրոպեան մրցանակաբաշխութեան ամբողջ մրցանակով 1888 թուին։ Առհասարակ աշխատութեան հազիւ քառորդ մասը կապ ունենայ հայերէն գրերու պատմութեան հետ։

Fr. Müller. — Ueber den Ursprung der vocalzeichen der armenischen Schrift. WZKM. 1894, էջ 155—160. Թրգմ. ՀԱ. 1894, էջ 244—6։

Ն. Տաղաւարեան — Տաղումն հայ տառից. Վիեննա, 1895։

Ա. Մ. Գարագաշեան — Քննական պատմութիւն Հայոց. մասն Դ. Թիֆլիս, 1895, գլուխ Ա. «Հայք յանտէրնչութեան. մատենագրական շարժումն». էջ 5-110։

Հ. Յովհ. Թորոսեան — Համառօտ տեսութիւն Կորեան եւ իւր գրութեան վրայ. Բազմ. 1897. էջ 110-115 եւ 303-310 (շարունակելի). Թէեւ Կորիւնի մասին է, բայց քանի մը տեղ ունի նաեւ Ս. Մեսրոբի մասին զանազան խնդիրներ։

Հ. Բ. Սարգիսեան — Տաղումն հայ տառից. Բազմ. 1897, ապրիլ, յաւելուած. էջ 1-7 (ընդարձակ քննադատութիւն Տաղաւարեանի երկին)։

Ստ. Մալխասեանց. — Դասընթաց, Հայոց մատենագրութեան պատմութեան. (վիմագրեալ). Թիֆլիս 1899. հայկական նշանագրերի մասին էջ 41 46, գրերի գիւտը էջ 46-53, Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի գործունէութիւնը էջ 53-57, Աստուածաշունչ գրքի թարգմանութիւնը էջ 57--70։

Լէօ. — Ս. Մեսրոպ. Թիֆլիս 1904. Հրատարակութիւն Աւետիս Պօղոսեանցի. բաւական ընդարձակ կենսագրութիւն մ'է (էջ 336), բայց գրական ու հրապարակախօսական ոճով գրուած ըլլալով, ամենեւին նորութիւն մը չի պարունակեր։

Գ. Խալաթեան. — Հայ Արշակունիք ըստ Մ. Խորենացւոյ կամ Նոր ուսումնասիրութիւններ Մ. Խորենացւոյ մասին (ռուսերէն). Թրգմ. Ա. վարդ. Սիմոնեանց, Վիեննա, 1906։ Այս կարեւոր աշխատութիւնը դժբախտաբար գործիս պատրաստութենէն ետք հրատարակուեցաւ, բայց իր պարունակած բոլոր կէտերը մացուցի՝ նորէն խմբագրելով աշխատութիւնս։

Ասոնցմէ դուրս յիշենք նաեւ Գ. Աղայեանցի քանի մը աշխատութիւնները, որ թէեւ ուղղագրական խնդրին կը վերաբերին, բայց քանի մը տեղ կը շօշափեն հայերէն տառերու թիւն, ծագման ու նախկին հնչման վերաբերեալ զանազան խնդիրներ։ Այս գործերն են.

Հայկական հնչիւններու մասին (լուծումն տարակուսութեանց)։ Տփխիս, 1874։

Մեր ուսուցիչներին ընկերական նուէր. Թիֆլիս 1892։

Մի թեթեւ հրահանգ մեր լեզուի ուղղագրութեան մասին. Աղբիւր, Բ. բաժին, 1888, թիւ 12։

Իւնը ձայնաւո՞ր է, թէ բաղաձայն. Աղբիւր, Բ. բաժին 1889, թիւ 5—6։

Սուրբ Լեզու. Մուրճ, 1890, թիւ 11-12։

Երկբարբառները մեր լեզուի մէջ. Մուրճ, 1891, թիւ 4։

Մեր գրերի թիւն ինչո՞ւ է 36. Մուրճ, 1889, թիւ 12։

Տառադարձութեան խնդիր. Աղբիւր, Բ. բաժին, 1889, թիւ 1։

ՎԵՐՋ